# ԱՆՕՐԻՆԱԿ ԽԻԶԱԽՆԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Ռ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

## ԼԵԳԵՆԴԸ

1941 թվական։ Ֆաշիստական զորքերն անսպասելի հարձակումով թափանցել էին սովետական երկրի խորքերը։ Նրանք պատերազմի հենց սկզբի օրերին միմյանց հետևից գրավեցին մեր մի շարք քաղաքները։ Բայց ֆաշիստական զորքերի թիկունքից սկսեցին լուրեր հասնել, թե մեր պետական սահմանի վրա, արդեն խոր թիկունքում, հերոսական մարտերով դեռևս պաշտպանվում է Բրեստ քաղաքի հինավուրց ամրոցը։ Անցան ամիսներ, տարիներ և այդ լուրերը սկսեցին հնչել գրեթե որպես գեղեցիկ լեգենդ՝ սովետական մարդկանց հայրենասիրության ու հերոսականության մասին և վերջ ի վերջո մոռացվեցին։

Բայց ճշմարտությունը երբեք չի կարող մեռնել։ Որտեղ և ինչ փականքների տակ էլ նրան պահես, նա դարձյալ մի օր ինքն իր մասին կխոսի։

Այդպես էլ պատահեց այդ լեգենդի հետ։

Առաջին անգամ Բրեստի պաշտպանության մասին սովետական մարդիկ իմացան, երբ ջախջախելով գերմանական դիվիզիաներից մեկը, նրա արխիվում հայտնաբերեցին այդ պաշտպանության մասին մի քանի փաստաթղթեր։ Բայց դա շատ քիչ էր, և ճշմարտությունը էջ առ էջ պարզվեց հետագա տարիների ընթացքում։

Բրեստի հերոսներից շատ քչերն են կենդանի մնացել։ Նրանցից մեկը, Անատոլ Վինոգրադովը 1945 թվականին զորացրվելով, գնացել էր Բրեստ և այնտեղ հանդիպելով սովետական մի խումբ մարտիկների պատմել, թե ինչ դեպքեր են տեղի ունեցել այդ վայրում։ Նրան չէին հավատացել։ Մարտիկներից մեկն ասել էր.

— Հեքիաթներ մի պատմեք։ Եթե իրոք պատահած լիներ այն ամենը, ինչ որ դուք պատմում եք, ապա ամբողջ ժողովուրդը կիմանար այդ մասին։ Իսկ մենք ոչինչ չգիտենք։

## ԹԵ ԻՆՉ ԷԻՆ ՊԱՏՄՈՒՄ ԲՐԵՍՏԻ ԱՄՐՈՑԻ ՔԱՐԵՐԸ

Սակայն այդ սաողները չգիտեին, որ երբ 1944 թվականին մեր զորքերը վերստին ազատագրեցին Բրեստը, ամրոցի շրջակայքն ու ներսը ուսումնասիրելով, զարմանալի և ապշեցուցիչ նորություններ իմացան։ Ամրոցի պատերից երևում էր, որ մի ժամանակ այդտեղ ընթացել են կատաղի մարտեր։ Չնայած արդեն տարիներ էին անցել, բայց այդտեղ ամեն մի քարի վրա, փլված ու խորտակված պատերի ամեն մի բեկորի վրա երևում էին ռումբերի ու գնդակների անթիվ հետքեր, որոնք արդեն ծածկվել էին բուսականությամբ։



Բայց դա բոլորը չէր։ Մեր մարտիկները սկսեցին ավելի ու ավելի ուշադիր զննել ամրոցի պատերն ու քարերը։ Նրանք հայտնաբերեցին մի ամբողջ շարք գրություններ, որոնք խորին հուզմունքով էին համակում մարդու։ Ահա այդ գրություններից մի քանիսը.

«Մենք երեքով էինք, մեզ համար շատ դժվար էր, բայց մենք չենք ընկճվել, մենք կմեռնենք հերոսների նման։ 1941 թվական, հուլիս»։

Ահա մեկ ուրիշ գրություն.

«Մենք երեք մոսկվացիներ՝ Իվանովը, Ստեպանչիկովը, Ժունտյաևը, պաշտպանելով այս եկեղեցին, երդվեցինք՝ կմեռնենք, բայց այստեղից չենք

№ 2 1960 թ.
ՓԵՏՐՎԱՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ





հեռանա: 1941 թվական, հուլիս»: Մի փոքր ավելի ցածում մեկ ուրիշ գրություն, «Մնացի մենակ: Ստեպանչիկովն ու Ժունտյաևը սպանվեցին: Գերմանացիներն արդեն եկեղեցու ներսում են: Վերջին նռնակն է մնացել, սակայն կենդանի չեմ հանձնվի: Ընկերնե՛ր, վրեժ լուծեցեք մեզ համար»:

Ահա սրա նման բազմաթիվ գրություններ էլ կարդացին մեր մարտիկներն ու հրամանատարները: Բայց միայն անշունչ քարերը չէին, որ խոսեցին: Բրեստի շրջակայքում այդ ամրոցի հերոս պաշտպաններից շատերի ընտանիքների անդամներն էին ապրում, նրանցից ոմանք իրենց ամուսինների, հայրերի ու եղբայրների հետ մասնակցել էին ամրոցի պաշտպանությանը, ականատես եղել սովետական մարտիկների այդ զարմանալի հերոսության: Սովետական երկրի զանազան քաղաքներում ապրում ու աշխատում էին Բրեստի պաշտպանության կենդանի մնացած փոքրաթիվ հերոսները: Նրանք էլ էին վկայում հերոսական մարտերի ճշմարտության մասին: Շուտով սովետական մամուլում երևացին ակնարկներ, հոդվածներ, պատմվածքներ Բրեստի պաշտպանության մասին, սակայն այդ բոլորը այն զարմանալի լեգենդար կռիվների միայն աննշան հատվածներն էին պատմում:

Բրեստի պատմությամբ, նրա հերոսներին հայտնաբերելու, նրանց անունները իմանալու գործով առաջին անգամ հիմնավորապես սկսեց զբաղվել գրող Սերգեյ Սմիռնովը: Դա չափազանց դժվարին, վիթխարի ջանքեր պահանջող մի աշխատանք էր, սակայն գրողը չվախեցավ դժվարություններից: Համբերատարությամբ, համառությամբ նա գնում էր կենդանի մնացած հերոսների հետքերով: Այդ հետքերը անցնում էին մեր Հայրենիքի ամենատարբեր ուղղություններով: Մեկ դեպի հեռավոր Յակուտիա, մեկ դեպի Հայաստան, մեկ էլ հյուսիսային Կովկաս: Շատերի մասին ասում էին, որ սպանված են բայց Սմիռնովը անսպասելիորեն կարողանում էր հայտնաբերել նրանց: Այդպես պատահեց հերոսական պաշտպանության մասնակիցներից մեկի՝ Սամվել Մաթևոսյանի հետ:

## ԱՅՍՏԵՂԻՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ՍԿՍՈՒՄ Է ԲԱՑԵԼ ԻՐ ԿԾԻԿԸ

Սմիռնովն իմացավ, որ Մաթևոսյանը ողջ է, ապրում և աշխատում է Երևանում:

Եվ ահա գրողը Երևանում է: Այստեղ նա մի քանի օր անցկացրեց Մաթևոսյանի հետ զրույցներ ունենալով, որից հետո նա և Մաթևոսյանը միասին մեկնեցին Բրեստ, ինչ խոսք, որ ծանոթ վայրերում Մաթևոսյանն ավելի շատ մանրամասնություններ կկարողանար հիշել: Մաթևոսյանի հետ ունեցած երկար զրույցները շատ բան պարզեցին:

Այն միջոցին, երբ գերմանացիներն անսպասելիորեն հարձակվելով, ներխուժեցին Բրեստ, Մաթևոսյանը ծառայում էր որպես գնդի քաղղեկի տեղակալ: Գնդի կոմիսար Եֆիմ Ֆոմինը ընդունելով գնդի հրամանատարությունը, իր օգնականին՝ Մաթևոսյանին հանձնարարեց գլխավորել գերմանացիների դեմ առաջին հակագրոհը: Մաթևոսյանը կոչ արեց մարտիկներին՝ ոչ մի քայլ չնահանջել



ատելի թշնամուն ոչնչացնելու համար, կոչ արեց՝ մինչև արյան վերջին կաթիլը հավատարիմ մնալ Հայրենիքին, ապա նրանց տանելով հակագրոհի, ոչնչացրեց թշնամու մի մեծ ջոկատ։ Հենց այդ պահից էլ սկսվեց Բրեստի ամրոցի պաշտպանության հերոսական պատմությունը։ Մաթևոսյանն այնուհետև երկու անգամ վիրավորվում է և շարունակում հերոսաբար մնալ մարտական շարքերում, բայց երրորդ անգամ նա շատ ծանր է վիրավորվում, երբ, վերջ ի վերջո, գերմանացիները գրավում են ամրոցը, նա պառկած է լինում գիտակցությունը կորցրած։ Ֆաշիստները նրան այդ վիճակում գերի են վերցնում։ Նա փախչում է գերությունից, կազմակերպելով վեց ուրիշ մարտիկների փախուստը։ Նրանք միանում են գերմանացիների թիկունքում գործող պարտիզանական ջոկատին, մասնակցում բազմաթիվ մարտերի։ Մարտերից մեկի ժամանակ Մաթևոսյանը ծանր վիրավորվում է։ Պարտիզանները նրան թողնում են մի գյուղացու բնակարանում։ Իսկ երբ վերքերը ապաքինվում են, ֆաշիստ ոստիկաններից փրկվելու համար նա թաքնվում է Լուցկ քաղաքում, այնտեղ առերևույթ զբաղվելով կոշկակարությամբ, աշխատում է ընդհատակում և կազմակերպում պայքար ֆաշիստների դեմ։ Երբ 1944 թվականին մեր զորամասերը մտնում են Լուցկին, բնակչությունը Մաթևոսյանի գլխավորությամբ ապստամբություն է բարձրացնում և հեշտացնում Լուցկը ֆաշիստներից ազատելու համար մեր զորքերի մղած պայքարը։

Մաթևոսյանը, իհարկե, ավելի շատ պատմում էր Բրեստի պաշտպանության իր մյուս ընկերների մասին, սակայն Սմիռնովը երկար զրույցների միջոցով նրանից կարողացավ իմանալ նաև նրա մարտական կենսագրությունը։ Մաթևոսյանի հետ ունեցած զրույցները Սմիռնովի համար եղան սկիզբը, որով սկսվեց կամաց-կամաց բացվել պատմության կծիկը, և նա կարողացավ այնուհետև իմանալ բազմաթիվ այլ հերոսների մասին, որոնցից շատ քչերն էին կենդանի մնացել։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՆՐԱՆՑ ՉԻ ՄՈՌԱՆԱ

Բրեստի պաշտպանության մի խումբ մարտիկներ, բոլորն էլ վիրավոր, իրենց հրամանատարի, կապիտան Շաբլոնսկու հետ միասին գերի ընկան։ Շատերի հետ միասին գերի ընկան նաև նրանց ընտանիքները։ Եվ ահա ֆաշիստները քշում են նրանց։ Շաբլոնսկին, ծանր վիրավոր, հազիվ քայլում է ճանապարհով, գրկին ութ ամսական աղջիկը։ Ահա ճանապարհը անցնում է մի կամուրջով։ Կամուրջի մեջտեղում սովետական կապիտանը երեխային հանձնում է կնոջն ու գոչում.

— Ով չի ցանկանում գերի մնալ թշնամուն՝ իմ ետևից։ Այս խոսքերով նա իրեն նետում է գետը։ Շաբլոնսկու մարտիկները բոլորը մեկ մարդու նման հետևում են իրենց սիրելի հրամանատարի օրինակին։

Հիտլերականները բոլորին ջրի մեջ գնդակահարում են։

Բրեստի պաշտպանության մասնակիցներից ովքեր ողջ են մնացել, երբեք չեն մոռանա տասնչորսամյա Պետյա Կլիպայի քաջագործությունները։ Նա անվախորեն հետախուզություններ էր կատարում թշնամու ճամբարում, մահաբեր կրակի տակ սողեսող, զինվորական կաթսայիկն ատամներով բռնած, վիրավոր մարտիկների համար ջուր էր բերում, հասակավորների հետ միասին նա մինչև անգամ սվինամարտերի ու ձեռնամարտերի էր մասնակցում։ Ահա թե ինչպիսին է եղել այդ քաջարի պատանին։ Նա այն քչերից է, որոնք պարզապես հրաշքով ողջ են մնացել։

Այդպես, շատերի մասին կարողացավ իմանալ Սերգեյ Սմիռնովը։ Բայց բազմաթիվ հերոսների անուններ մեզ անհայտ են։

## ԱՆՀԱՅՏԸ

Ահավոր ճիգերով գերմանացիները վերջապես կարողացան գրավել ամրոցը։ Բայց սովետական

շատ մարտիկներ քաշվեցին ամրոցի նկուղներն ու գետնուղիները և այնտեղ երկար ժամանակ շարունակում էին խումբ-խումբ, հաճախ էլ բոլորովին մենակ կռվել: Ի վերջո հիտլերականները Բուգ գետի ջրերը հատուկ ջրանցքներով լցրեցին ամրոցի նկուղները և ոչնչացրին այդ հերոսներին: Բայց Բրեստի բնակիչները դեռ երկար ժամանակ լսում էին կրակոցներ ամրոցի շրջակայքում: Նշանակում էր դեռևս առանձին մարտիկներ շարունակում էին կռվել: Ահա թե ինչ է պատմում Բրեստի պաշտպանության մասնակիցներից մեկը՝ Դուբասովը, որը գերի է եղել գերմանացիների մոտ, Բրեստի մոտ գտնվող ճամբարում:

— Մեզ մոտ, գերիների մեջ,— պատմում է նա,— կար մի երիտասարդ, որը երաժիշտ էր եղել մեր գնդում: Մի անգամ, ամբողջ օրը բացակայելուց հետո նա ճամբար վերադարձավ միայն ուշ գիշերով ու պատմեց հետևյալը.

«Գերմանական մի սպա ինձ նստեցրեց ավտոմեքենա և տարավ դեպի ամրոցը: Ավերակների մեջ մի փոս կար, որը տանում էր դեպի գետնի տակ: Սպան ինձ հրամայեց.

— Այդտեղ ներքևում թաքնված մի ռուս կա: Նա չի ուզում հանձնվել, դիմադրում է: Դու պետք է նրան համոզես դուրս գալ: Խոստանում եմ նրա կյանքը խնայել: Եթե չհամոզես, քեզ կգնդակահարենք:

Երաժիշտը դժվարությամբ անցքի մեջ մտնելով, սկսեց առաջ շարժվել մի նեղլիկ, մթին գետնուղով: Ամբողջ ճանապարհին նա շարունակ բարձրաձայն կրկնում էր, թե ով է ինքը և ինչ նպատակով է գալիս, որպեսզի անծանոթը նրան չգնդակահարի: Որոտաց կրակոցը: Գնդակը չդիպավ երաժշտին, բայց նա լսեց մի թույլ ձայն:

— Մի՛ վախենա, օդում կրակեցի: Դա իմ վերջին փամփուշտն էր: Ես վաղուց ուտելիք չունեմ: Օգնիր, որ դուրս գամ:

Մարդը բոլորովին ուժ չուներ, երաժիշտը նրան տարավ դուրս, բայց մաքուր օդում անծանոթը բոլորովին կորցրեց գիտակցությունը: Երբ ուշքի գալով, տեսավ գերմանացիներին, ըստ երևույթին չցանկանալով թշնամիների մոտ ցույց տալ իր թուլությունը, փորձեց ոտքի կանգնել, բայց նորից ընկավ: Գերմանական սպան հարցրեց.

— Էլի՞ կան այնտեղ ռուսներ:

— Ոչ,— պատասխանեց անծանոթը,— ես մենակ էի և դուրս եկա միայն նրա համար, որ տեսնեմ, թե որքան անզոր եք դուք մեզ մոտ, Ռուսաստանում:

Այնուհետև երաժշտին կարգադրեցին հեռանալ, և նա չիմացավ, թե հետագայում ինչ պատահեց այդ անծանոթի հետ:

Ո՞վ էր նա, ի՞նչ մարդ էր, մինչև հիմա անհայտ է: Նա միակը չէ, այդպիսի բազմաթիվ հերոսներ են եղել Բրեստում, որոնց մասին մենք դեռևս ոչինչ կամ համարյա թե ոչինչ չգիտենք:

Բրեստի պաշտպանները մեծ, շատ մեծ կորուստներ պատճառեցին ֆաշիստ հիտլերականներին, սակայն Բրեստի պաշտպանության նշանակությունը բոլորովին այլ էր:

Բրեստի պաշտպանությունը ցույց տվեց, թե ինչ աստիճանի քաջարի է սովետական ժողովուրդը, թե որքան բարձր է նրա մեջ հայրենասիրության գաղափարը, թե որքան խոր հավատ ունի նա կոմունիզմի գործի անպարտելիության նկատմամբ:

Բրեստը սովետական մարդու անխորտակելի կամքի, նրա վառ հայրենասիրության խորհրդանիշն է:

Ո՛չ մի դարաշրջանում նա չունի իր նմանը, և նրա մասին բոլոր պատմությունները դարեր շարունակ կփոխանցվեն սերնդից-սերունդ, որպես մի գեղեցիկ ավանդություն:



# ՁՄԵՌ

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Բազմած խենթ քամու անսանձ նժույգին,
Ոսկե աշունը գնաց արձակուրդ։
Զարթնեց խոր քնից ձմեռը կրկին
Ու փչեց փուքսը հողմաշունչ ու ցուրտ։

Գլորեց-տարավ ափսեն արևի
Ու պահեց ամպի կաթնագույն գրկում.
Մի գիշերվա մեջ ծիլ, ծաղիկ ու ծառ
Արծաթազօծեց սարում ու հանդում։

Նրա պաղ շնչից աղբյուր ու առվակ
Համրացան ասես, դարձան ադամանդ,
Ծիտն իր գլուխը քաշեց փորի տակ,
Հատիկը նեղվեց հողում սառցապատ։

Բայց մանուկները զնգուն կարկաչով
Դահուկներ առած դուրս ելան բակից,
Բարձրացան վերև սարերի լանջով
Ու չվախեցան սառնամանիքից։

Տեսավ ձմեռը, ժպտաց բեղի տակ,
Ասաց՝ ապրե՛ք դուք, թոռնիկներ իմ քաջ։—
Նրանց այտերին վրձինով ճերմակ
Նկարեց իսկույն մի-մի վառ կակաչ։

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ



Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՍԱՌՑԵ ԾԱՂԻԿԸ

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Ես լավ գիտեմ, որ ծաղիկը
Շատ է սիրում արև, ջուր,
Այդ ասել է ինձ մայրիկը,
Բույսը մութ տեղ չի աճում:
Քնից ելա մի առավոտ
Ու ի՞նչ տեսա հանկարծ ես.
Մեր ապակու վրա ձյունոտ
Շատ ծաղիկներ կան պես-պես:
Ուրախացած ես թռա վեր
Ու մոտեցա ապակուն,
Ուզում էի լավ օր լիներ,
Արև դուրս գար մեր բակում:
Բայց արևը ժպտաց վերից,
Ես նայեցի զարմացած՝
Մի վայրկյանում պատուհանից
Ծաղիկները չքացան:
Ես լավ գիտեմ, որ ծաղիկը
Շատ է սիրում արևին,
Բայց չիմացա այդ գաղտնիքը.
Դեռ փոքրիկ եմ երևի:

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ



Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

# Ո՞Վ ՀԱՅՏՆԵՑ ԳԱՂՏՆԻՔԸ

Երեխաները, երբ խաղում են, տարերքի մեջ են լինում, հատկապես ռազմական խաղերի ժամանակ։

Ահա նրանք հավաքվել են մեր բակի փոքրիկ բլրակի մոտ։ Նորից բաժանվել են երկու բանակի։

Մի խումբը բլրակի գագաթին է՝ հրացաններով, թնդանոթներով զինված, մյուսները ներքևում են. նրանք նախապատրաստվում են հարձակման։

Պետք է գրավել բարձունքը։

Կարենը հրամանատար է. նա կանգնել է հուզված ու մտախոհ։ Ահա գրպանից հանում է դատարկ լուցկու տուփը, քանդում վրայի փաթաթված լարը, ծայրը տալիս ընկերներին։ Դառնում է «հեռախոսը»։

— Ալլո՜, ալլո՜…

— Լսու՛մ ենք, ընկե՛ր հրամանատար։

— Պետք է հարձակվե՛լ։ Մեր զինվորների մի մասը «թշնամու» վրա կհարձակվի թիկունքից, իսկ մենք կխփենք ճակատից։ Լսու՞մ եք։

— Լսու՜մ ենք, ընկե՛ր հրամանատար։

Կարենը նորից է փաթաթում լարը լուցկու տուփի վրա։ Բայց հանկարծ նկատում է, որ բլրակի վրա նստած «թշնամու» զինվորները փոխում են իրենց դասավորությունը։

— Ո՞վ հայտնեց գաղտնիքը,— ճչում է Կարենը և լացակումած նայում շուրջը,— մի՞թե իմ զինվորների մեջ լրտես կա թաքնված, ասացե՛ք, ո՞վ հայտնեց գաղտնիքը։

Երեխաները լուռ են, ոչ որ իրեն լրտես չի համարում, ոչ մեկը չի կարմրում։

— Հապա ո՞վ հայտնեց նրանց,— քիչ է մնում լաց լինի Կարենը։

Երեխաները խառնվում են։ Խաղը մնում է կիսատ…

Երեխաները տարերքի մեջ են լինում հատկապես այն ժամանակ, երբ ռազմական խաղեր են խաղում…

Ինչպե՞ս գլխի չէր ընկնում Կարենը, որ ինքը հայտնեց գաղտնիքը, որ իր հեռախոսը լուրը գաղտնի հաղորդել չկարողացավ։

Եվ ինչպե՜ս անկեղծորեն էր գոռում.

— Ասացե՛ք, ո՞վ հայտնեց գաղտնիքը։



## ԵՍ ՉԵՄ ԿԱՐՈՂ ԿՐԱԿԵԼ ՆՐԱ ՎՐԱ

Նրանք կռվում էին՝ երկու բանակի բաժանված։

Կարենը կրակում էր իսկական զինվորականի նման, և «թշնամու» զինվորները վայր էին գլորվում, թաքնվում կողք-կողքի, հնձված խոտի պես ծածկում գետինը։

— Ուռա՜,— գոռում էին կարմիրները։

Ու նա, մեր փոքրիկ Կարենը, թնդանոթը գրկած կրակում էր ու կրակում...

Թռչում էին փայտե գնդակները, խփում աջ ու ձախ, և ընկնում էին իրար հետևից, ընկնում էին «հակառակորդները»։

Հանկարծ լռեց թնդանոթը։ Կարենը հուզվեց, իսկական զինվորի նման տխրեց։ Բայց նա շատ փոքր էր և լաց եղավ։

Ընկերները կրակում էին ատրճանակներով, հրացաններով... Իսկ իր թնդանոթը լռել էր, «թշնամին» ահա գլուխ էր բարձրացնում։ Նա պառկել էր փչացած թնդանոթի կողքին, արցունքով լի աչքերը հառած «թշնամուն»...

Նա ուզում էր գոռալ, օգնության կանչել. «Վարդա՜ն, եկ տես ի՞նչ է եղել...»

Բայց զսպում էր իրեն, ինչպե՞ս կանչեր, չէ՞ որ Վարդանը մյուս բանակից էր...

Հանկարծ ամեն բան մոռացած մոտ վազեց ինքը՝ Վարդանը և իսկույն կարգի գցեց Կարենի թնդանոթը։

— Թրը՜խկ,— որոտաց թնդանոթը, նորից աշխատեց, նորից կրակեց...

Բայց այժմ դեմ ու դեմ մնացին երկուսը՝ մեկը մեր Կարենը, մյուսը՝ Վարդանը։

Դողում են Կարենի ձեռքերը, բաց զինվորը վախկոտությո՞ւն է ցույց տալիս, ի՞նչ է, թե՞ նորից է լռել թնդանոթը։

— Կրակի՛ր,— գոռում էին ընկերները։

— Կրակի՛ր,— պահանջում էր հրամանատարը։

Բայց լուռ ու անշարժ կանգնած էր զինվորը։

— Ես չեմ կարող կրակել նրա վրա,— հազիվ արցունքները զսպելով շշնջաց Կարենը։

— Կռիվը վերջացա՜ծ է, կռիվը վերջացա՜ծ է,— գոռում էին երեխաները։

Եվ ահա գրկում են իրար մեր փոքրիկ Կարենն ու Վարդանը։



Աշխարհագրական խմբակի օրագիր

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

# ԵՐՐՈ՞ՐԴ, ԹԵ՞ ԵՐԿՐՈՐԴ

1960 թիվ, հունվարի 11։

Նոր տարվա տոներից անմիջապես հետո, ընկեր Համմիկն ասաց, որ շեֆերը ավտոբուս են տրամադրում դեպի Կիրովական էքսկուրսիայի համար։ Իհարկե, մենք բոլորս էլ շատ ուրախացանք։

Նախօրոք որոշեցինք, թե ով ինչ պիտի անի։ Վարազդատ Մովսիսյանը կզեկուցի «Կիրովականի պատմությունը» թեմայով, Զավեն Քալանթարյանը՝ քիմկոմբինատի մասին, Նունե Վարդանյանը՝ «Կիրովականը ավտոմատիկայի կենտրոն» թեմայով, Կարո Օհանյանը՝ ընդհանրապես Կիրովականի մասին, Սեդա Միրզոյանն էլ՝ քաղաքի յոթնամյակի մասին։ Օրագրի մեջ ամեն մեկը գրի կառնի իր զեկուցման բովանդակությունը։

Մեկնեցինք երեկ՝ կիրակի օրը։ Ճանապարհն անցավ շատ ուրախ և արկածներով, բայց դրանց մասին ոչինչ չեմ գրի։ Դա չէ ամենագլխավորը։ Ամենագլխավորն այն է, որ մենք ամբողջ օրն անցկացրինք Կիրովականում և տեսանք շատ հետաքրքիր բաներ։ Զեկուցողները նյութեր էին հավաքում։ Հետևյալ պարապմունքին նրանք ելույթ կունենան։

Արմեն Ալավերդյան

1960 թիվ, հունվարի 17։

Այսօր տեղի ունեցավ պարապմունք նվիրված Կիրովականին։ Առաջինը ես խոսեցի։ Իմ զեկուցման թեման էր «Կիրովականի պատմությունը»։

Քաղաքի բնակչությունը 1919 թվին՝ 4000, 1939 թվին՝ 18.000, անցյալ տարի 50.000։ Հայաստանում ոչ մի քաղաք այդպիսի տեմպերով չի աճել։ Կիրովականը իր մեծությամբ համարվում է ռեսպուբլիկայի երրորդ քաղաքը, բայց եթե հետագայում էլ այդպես աճի, շուտով կդառնա երկրորդը։

Նախկինում կոչվում էր Ղարաքիլիսա։ Ադրբեջաներեն դա նշանակում է «Սև եկեղեցի»։ Ինչքան էլ աշխատեցի իմանալ, ինչու՞ են այդպես անվանել, ինձ չհաջողվեց։ Փոխարենը ես գտա մի հին տեղեկագիր, որի մեջ գրված էր. «Ղարաքիլիսան մի մեծ գյուղ է Չիչխան գետի ափին և հռչակված է իր մեղրով ու խնձորներով»։ Այստեղ կլիման շատ լավն է, դրա համար ամռանը միշտ գալիս էին հանգստանալու։ Իսկ տեղի բնակիչներից շատերը արհեստավորներ էին, շատերն էլ զբաղվում էին այգեգործությամբ, մեղվաբուծությամբ և հողագործությամբ։

1935 թվականից քաղաքը կոչվում է Կիրովական։ Հիմա էլ այստեղ ամառանոց են գալիս և հիմա էլ այստեղ հիանալի խնձոր ու մեղր կա, բայց շատ բան փոխվել է։ Այժմ Կիրովականը դարձել է արդյունաբերական կենտրոն, նույնիսկ հայտնվել են գիտական հիմնարկություններ։ Արդյունաբերության մասին ուրիշները մանրամասն կխոսեն։

Ես արդեն ասացի այն մասին, որ հիմա Կիրովականում շատ մեծ շենքեր կան։ Նեղ և ծուռ փողոցների փոխարեն ստեղծվել են լայն, ասֆալտապատ պողոտաներ։



Մինչև հեղափոխությունը այստեղ մի բժիշկ և մի դպրոց է եղել։ Հիմա 34 տարբեր բժշկական հիմնարկություններ կան, 30 դպրոց, տեխնիկումներ և ուսումնարաններ։ Կան կինոթատրոններ, թատրոն, ակումբներ, կուլտուրայի տներ, գրադարաններ։

Կիրովականի պատմության մասին, ինձ մոտ կան նաև ուրիշ տեղեկություններ, բայց, իհարկե, այդ բոլորը օրագրում չեմ արտագրի։

Վարազդատ Մովսիսյան

Ինձ հանձնարարեցին զեկուցել Միասնիկյանի անվան քիմկոմբինատի մասին։ Ընկ. Պետրոսյանն ասաց, որ զեկուցումը պետք է կարճ լինի։ Բայց մի՞թե այս կոմբինատի մասին կարելի է կարճ խոսել։ Ախր դրա մասին նույնիսկ մի ամբողջ գիրք է գրված։ Բայց ի՞նչ արած, աշխատեցի կարճ խոսել։ Իսկ այստեղ ավելի կարճ կգրեմ։

Կոմբինատը հսկայական ձեռնարկություն է. ունի շատ ցեխեր։ Նրա շինարարությունը սկսվեց առաջին հնգամյակի տարիներին։ Այն ժամանակ չկային այնպիսի շինարարական մեքենաներ, ինչպես հիմա։ Օրինակ՝ փայտանյութը, քարերը, ցեմենտը, սայլերով էին տեղափոխում։ Բայց արագ կառուցեցին։ Իր առաջին արտադրանքը կոմբինատը թողարկեց 1932 թվականին։ Հիմա այդ կոմբինատը մեր ռեսպուբլիկայի ամենամեծ ձեռնարկություններից մեկն է։ Նրա կորպուսները, բնակելի շենքերը և տարբեր կուլտուր-կենցաղային հաստատությունները զբաղեցնում են Կիրովականի գրեթե կեսը։ Կոմբինատը թողարկում է կալցիումի կարբիտ, հանքային պարարտանյութեր և շատ ուրիշ քիմիական արտադրանք։ Դրանք ուղարկում են Հայաստանի տարբեր վայրերը, մեր հարևան ռեսպուբլիկաները և արտասահման՝ Չինաստան, Կորեա, Ռումինիա, Ալբանիա, Իրան, Աֆղանստան, Կամբոջա։ Կոմբինատն անընդհատ ընդարձակվում է։ Վերջերս շարք մտավ ևս մի նոր ցեխ, ուր կորունդ են արտադրում։

Կորունդը թանկարժեք, կարծր հանքատեսակ է։ Այն օգտագործում են գործիքներ, ժամացույցներ, պատեֆոնի ասեղներ, ոսկերչական իրեր պատրաստելու համար։ Արհեստական կորունդը, ոչնչով ետ չի մնում բնականից։ Երանգավորմամբ նա նույնիսկ ավելի լավ է։ Ուրիշ նոր ցեխեր էլ են կառուցվում։ Դրանց մասին իր զեկուցման մեջ խոսեց Սեդա Միրզոյանը։

Զավեն Քալանթարյան

Զավենն իր զեկուցման մեջ ասաց, որ Կիրովականը քիմիայի քաղաք է, իսկ ես ասում եմ. «Կիրովականը, դա ավտոմատիկայի քաղաք է»։ Ավտոմատիկայի գծով անհա թե ինչեր կան Կիրովականում։ «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտ, «Ավտոմատիկա» հատուկ կոնստրուկտորական բյուրո, «Ավտոմատիկա» գործարան և «Ավտոմատիկա» տեխնիկում։ Ճիշտ ասած, նրանք բոլորը կապված են քիմիական կոմբինատի հետ, որովհետև նրանց հիմնական խնդիրը, քիմիական գործարանների լրիվ ավտոմատացումն է։ Այս ձեռնարկությունները շատ երիտասարդ են, հայտնվել են վերջերս, բայց արդեն շատ գործ են արել։

Հենց այդ մասին էլ խոսեցի իմ զեկուցման մեջ։

Նունե Վարդանյան



Իմ խնդիրն է պատմել Կիրովականի մասին այն ամենը, ինչ Վա-

բազդատը Ջավենն ու Նունեն չասացին:

Կիրովականում քիմկոմբինատից և «Ավտոմատիկա» գործարանից բացի, ուրիշ շատ գործարաններ էլ կան: Ահա նրանցից մի քանիսը՝ մսի կոմբինատը, մեքենաշինական, մեքենայական, կըղմինդր աղյուսի, ավտովերանորոգման գործարաններ, տրիկոտաժի, կոշիկի, կահույքի ֆաբրիկաներ: Նրանք թողարկում են հարյուր տեսակից ավելի տարբեր արտադրանք: Ամենից նոր, հետաքրքիր և կարևոր գործարանը արտադրում է փոքրիկ և շատ ճշգրիտ հաստոցներ, որոնք հարկավոր են գործիքներ, ժամացույցներ և ոսկերչական իրեր պատրաստելու համար:

Կիրովականում ոչ միայն «Ավտոմատիկա»-յի, այլև քիմիայի գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտ կա:

Բացի այդ, ինչպես արդեն ասաց Վարազդատը, Կիրովականը ամառանոցային քաղաք է: Այստեղ գտնվում են «Հայաստան» հիանալի առողջարանը և բազմաթիվ պիոներական ճամբարներ:

Կարո Օհանյան

«Կիրովականի ապագան, նրա յոթնամյակը»: Այսպես է կոչվում իմ զեկուցման թեման: Ես այդ մասին շատ նյութ եմ հավաքել: Օրագրում կգրեմ միայն մի քանի տեղեկություններ:

Յոթնամյակի ընթացքում քաղաքի գրեթե բոլոր գործարանները ընդլայնվելու են: Կկառուցվեն նորերը: Քիմկոմբինատն էլ կընդարձակվի և կունենա նոր ցեխեր: Աշխատել կսկսի ամուր, գեղեցիկ և էժան ացետատային արհեստական մետաքսի խոշոր գործարանը: Քաղաքը կստանա բնական գազ, քիմիական արդյունաբերության և բնակչության կարիքների համար:

Կկառուցվեն բազմաթիվ բնակելի տներ: Վեց տարի հետո յուրաքանչյուր Կիրովականցի կունենա ինը քառակուսի մետր բնակելի տարածություն: Քաղաքի փողոցներում կաշխատի տրոլեյբուսը, փոխանցող ենթակայանը հնարավորություն կտա դիտել Երևանի և այլ քաղաքների հեռուստատեսային հաղորդումները: Կկառուցվեն նոր հրապարակներ, կամուրջներ, զբոսայգիներ, հյուրանոց, թատրոն, ստադիոն, արհեստական լիճ, մանկական քաղաքներ:

Սեդա Միրզոյան

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԿՐԻԱՆ



(Չինական ժողովրդական հեքիաթ)

Այս դեպքը եղել է վաղուց, շատ վաղուց, անհիշելի ժամանակներում:

Այդ պահից ի վեր այնքան սերունդներ են փոխվել, որ հավանաբար մարդիկ մոռանային այս ամբողջ պատմությունը, եթե իմաստունները դեռ հնում, մետաքսե թղթի վրա գրի չառնեին գեղեցիկ տառերով՝ հիերոգլիֆներով:

Չքնաղ Չինաստանի հարավում, Դեղին ծովի ոսկե ափին ապրում էր մի փոքրիկ տղա՝ Տյան-Սյան անունով և ծեզ նման սովորում էր դպրոցում:

Խելոք էր Տյան-Սյանը, սիրում էր իր ծնողներին, հարգում մեծերին: Նա երբեք չէր թողնում, որ մայրը միայնակ ջուր բերի, միշտ օգնում էր նրան, իր ուժերի չափով, բռնելով ջրամանի մի կողքից: Օգնում էր նաև ծեր տատիկին՝ կտավ գործելիս, իսկ պապիկի ծխամորճի համար միշտ կրակ էր գտնում:

Տղան միայն մի թերություն ուներ: Նա չէր սիրում սովորել: Այն ժամանակ, երբ բոլոր երեխաները համբերությամբ նստում էին դասարանում և սովորում չինական դժվարին գիրը, նա վազում էր ծովափ և ոսկեգույն ավազի վրա, հիերոգլիֆների փոխարեն, չոփով թռչուններ, գազաններ ու մարդուկներ էր նկարում: Նա շատ էր ուրախանում իր նկարներով և գտնում էր, որ դրանք ավելի հետաքրքիր են, քան ուսուցիչների սովորեցրած հիերոգլիֆները:

Նրա նկարները, սակայն, երբեմն ոչ մի բանի նման չէին լինում, դրանք ծուռտիկ-մուռտիկ էին, տգեղ: Նրա ընկեր դպրոցականները ծիծաղում էին Սյանի վրա և ոտքերով տրորում նկարները: Իսկ Տյան-Սյանը շատ էր սիրում իր նկարները, չէր թողնում, որ տղաները տրորեն, բարկանում

էր նրանց վրա, խռովում նրանցից և նույնիսկ կռվում հետները:

— Ի՞նչ եք ուզում ինձնից, ինչո՞ւ եք տրորում իմ գազաններին և մարդուկներին: Չէ՞ որ նրանք կենդանի են... Ես ուզում եմ նրանցով լցնել ամբողջ ծովափը:

Եվ վշտացած հեռանում էր անծայրածիր ոսկե ավազների վրայով:

Իսկ տղաները ամեն անգամ հետապնդում էին նրան և ոչնչացնում նկարները:

Նրանք ուզում էին, որ Տյաո-Սյաոն այլևս չհամառի, որ թողնի իր անպետք զբաղմունքը և սկսի վերջապես հիերոգլիֆներով, գծագրությամբ և նկարչությամբ պարապել, ոչ թե ավազի վրա, այլ դասարանում:

Եվ ահա մի անգամ, մեծ դասամիջոցին, տղաները դուրս վազեցին դպրոցից, ցատկոտելով սլացան դեպի ծովափ, որպեսզի կրկին տրորեն Տյաոյի նկարները, բայց հանկարծ ոսկե ավազի վրա տեսան մի ահագին ծովային կրիա: Կրիան դուրս էր եկել ջրից արևի տակ տաքանալու և ննջում էր:

Չարաճճի դպրոցականները առանց երկար մտածելու կրիային շրջեցին մեջքի վրա: Խեղճը որքան երկարացնում էր իր անճոռնի, հաստ ոտքերը, որքան ավազին էր հենվում իր ճաղատ գլխով, չէր կարողանում այլևս շրջվել փորի վրա ու սողալ:

Տղաները ծիծաղում էին նրա զուր ջանքերի վրա, իսկ երբ հնչեց զանգը, իսկույն դեպի դպրոց վազեցին՝ դժբախտ կրիային թողնելով այրող արևի տակ: Եվ անպայման կսատկեր կրիան, եթե նրա մոտով չանցներ Տյաո-Սյաոն, որը դանակով մի չոփ էր սրում և ուրախ սուլում էր: Նա ուրախ էր, որ իրեն հաջողվեց բաց պատուհանով ճարպկորեն փախչել դասից:

— Օհո՜,— ասաց նա տեսնելով ոսկրե մեծ պատյանը, որից կախված էին չորս հրեշավոր ոտքեր և անճոռնի գլուխը,— ի՜նչ սարսափելի կրիա է: Ինչ հետաքրքիրն է: Պարզապես չեն հավատա, եթե ես մի այսպիսի կրիա նկարեմ: Ա՜խ, խեղճ կրիա, ախր այս արևի տակ դու կտապակվես քո բնում, ինչպես թավայի մեջ:

Տյաո-Սյաոն խղճաց կրիային և մեծ ջանքերով նրան փորի վրա շրջեց:

— Դե, շուտ գնա ծովի խորքը,— ասաց նա,— քանի դեռ մեր տղաները չեն վերադարձել: Գիտեմ, այդ նրանք քեզ շրջած կլինեն: Նրանք ամեն անգամ ոչնչացնում են իմ գազաններին, թռչուններին ու մարդուկներին:

Կրիան սողաց դեպի ծով, մտավ ջրի մեջ ու լողալով ալիքների վրայով հանկարծ խոսեց մարդկային ձայնով.

— Շնորհակալություն, ա՛յ բարի տղա: Ես ուզում եմ բարություն անել քեզ քո մեծ ծառայության համար: Խնդրիր, ինչ ուզում ես: Ես կկատարեմ քո ցանկությունը:

Տյաո-Սյաոն սկզբում զարմանքից լայն բացեց աչքերը և ձեռքից վայր գցեց սրածայր փայտիկը, որ վերցրել էր ավազի վրա նկարելու համար:

Հետո ծիծաղեց.

— Հա՛, հա՛, հա՛: Այ քեզ բան: Խոսող կրիա: Չէ՛, ոչ ոք չի հավատա: Նույնիսկ ես էլ չեմ ուզում հավատալ: Երևի սխալ լսեցի: Է՜յ, կրկնիր, ինչ որ ասացիր: Գուցե խոսողը դո՞ւ չէիր, այլ ալիքների ձայնն էի լսում ես:

— Ոչ, այդ ես եմ խոսում: Խնդրիր, ինչ ուզում ես, բարի տղա, դու արժանի ես լավ նվերի:

Տյաո-Սյաոն ավելի բարձր ծիծաղեց, դեռ չհավատալով, որ նրա դիմաց ոչ թե հասարակ, այլ կախարդական կրիա է, և ծիծաղի միջից գոչեց.

— Հարգելի, անծանոթ ծովային հյուր, եթե



քեզ համար դժվար չէ, ապա այնպես արա, որ կենդանանան իմ նկարները: Ա՛յ, դա է իմ միակ խնդիրը:

Կրիան լռեց: Երևի մտածում էր: Հետո ասաց.

— Լավ, թող քո ասածը լինի: Միայն թե հետո չզղջաս:

— Ո՛չ, ո՛չ, չեմ զղջա: Ինձ ուրիշ ոչինչ պետք չէ,—թեթևամտորեն պատասխանեց տղան:

Կրիան գլուխ տվեց ու սուզվեց ծովի խորքը:

Այս ամենը այնքան զարմանալի էր, որ Տյառ-Սյառն ուշքի եկավ միայն այն ժամանակ, երբ կրիան ամբողջովին անհետացել էր և թեթև քա-



մին ոսկե ավազի վրայից սրբում էր նրա ու նրան տանջող տղաների հետքերը:

—Ա՛յ քեզ հրաշք,—մտահոգված ասաց Տյառ-Սյառն,—երևի սա հենց այն հավերժական կրիան է, որի մասին պատմում էր պապիկս, երբ շիկացած ածուխ էի տալիս նրան՝ ծխամորճը վառելու համար: Այո, իհարկե, այն կրիան է, որը մեր ափն է ելնում հազար տարին մեկ՝ արևի տակ տաքանալու համար: Նա այնքան ծեր է, որ պատյանը արդեն մաշվել է ճանապարհորդություններից:

Ա՛յ, ա՛յ, ա՛յ, ինչ հետաքրքիր է: Եվ ինձ էլ բախտս բերեց, այսպիսի մի հրաշք տեսա...

Տյառ-Սյառն վերցրեց իր սրածայր փայտը ու բոլորովին մոռանալով, թե ինչ է խնդրել կրիայից, մեքենայորեն ավազի վրա կրիայի նման մի բան նկարեց: Կրիան ուներ գլուխ և միայն երկու ոտք:

Նա չէր հասցրել ավարտել նկարը, երբ պատկերված կրիան կենդանացավ, ցնցվեց ու գլուխը երկարելով սկսեց շարժվել:

— Վա՜յ, այս ի՞նչ էր,— վախեցած ետ ցատկեց Տյառ-Սյառն: Բայց հիշելով, որ կախարդական կրիան խոստացել է կենդանացնել իր բոլոր նկարները, ուրախ ծիծաղեց ու սկսեց ավազի վրա շտապ-շտապ նոր գծեր քաշել: Նա ուզում էր կրկին ու կրկին համոզվել, որ իր բոլոր նկարները կենդանանում են:

Ահա բադիկը, ահա հավիկը, ահա և իշուկը, ահա փիղը: Ահա և... Բայց սա՞ ինչ է, ոչ թռչուն է, ոչ գազան: Զէ՛, թռչուն է, բայց կճղակներ ունի: Ահա և կատու՝ մարդու ոտքերով:

Օ՜յ, ինչ ծիծաղելի է, ինձ է թփրտում:

Ահա և թռչուն՝ վագրի գլխով: Սարսափելի է: Ասենք՝ այնքան էլ սարսափելի չէ: Նա մոռացել է նկարել ճանկերն ու ատամները: Այդպիսի վագրը չի կարող կծել, բայց վախեցնել կարող է: Թող տղաները վախենան, բա ինչո՞ւ են տրորում Տյառ-Սյառի նկարները: Դե թող հիմա նրանք համարձակվեն ափ իջնել:

Եվ երջանիկ նկարիչը քրքջաց, պատկերացնելով, թե ինչպես իր նկար—կենդանիներից սարսափած, փախչում են այն տղաները, որ միշտ նեղացնում էին իրեն:

Շատ ուրիշ վայրի կենդանիներ նկարեց Տյառ-Սյառն: Բայց շատ շտապելուց, թե անփորձությունից, նա չէր կարողանում, ինչպես հարկն է, նկարել: Մոռանում էր նկարել մեկի ականջները, մյուսի քիթը, երրորդի բերանը:

Իր ստեղծած կենդանիները շրջապատեցին ձախորդ նկարչին ու սկսեցին մռնչալ, փնչալ, տարբեր ձայներով կանչել:

—Ի՞նչ արեցիր դու, սարսափելի անշնորհք մարդ, դու հրեշներ ստեղծեցիր:

Նայեց Տյառ-Սյառն և տեսավ, որ իր ստեղծած ամեն մի գազան ու թռչուն մի-մի պակասություն ունի: Հավը մի ոտանի է և ընկել է կողքի վրա: Բադն աչքեր չունի, իսկ փղի կնճիթի վրայից պակասում է մասը, որով նա այնպես հեշտությամբ վերցնում է սնունդը: Կաքավը չի կարողանում թռչել, վագրի գլխով ծիտիկը դժվարանում է կտցել: Կային նաև չտեսնված զարհուրելի կենդանիներ: Բոլորն էլ բացել էին իրենց երախները, սպառնում էին եղջյուրներով ու դոփում կճղակներով:

— Կերակրիր մեզ, ջուր տուր, թե չէ քեզ պատառ-պատառ կանենք:

Սարսափած տղան, չիմանալով ինչ անել, նետվեց դեպի Դեղին ծովը: Նա ծնկների վրա ընկավ ավազին և աղաչեց.

— Կախարդական կրիա, բարի, իմաստուն, ծեր կրիա, օգնիր ինձ, ինչպես ես օգնեցի քեզ:

Ալեկոծվեց Դեղին ծովը, ջուրը եռաց և ալիքների վրա հայտնվեց կախարդական վիթխարի կրիան:

— Ի՞նչ է պատահել, իմ փոքրիկ բարեկամ,

— Նայի՛ր, տես ինչ ստացվեց, երբ կենդանացան



նկարներս... Դու ամեն ինչ կարող ես անել... հրամայիր, որ նրանք նորից նկարներ դառնան: Այնպես ավելի լավ էր...:

— Լավ,— ասաց կրիան,— ուրեմն դու հրաժարվո՞ւմ ես քո ցանկությունից:

— Օ՜, ոչ,— վշտացավ Տյաո-Սյաոն,— չեմ ուզում հրաժարվել: Բայց թող կենդանանալուց հետո նրանք այնպես գեղեցիկ լինեն, ինչպես բնությունն է ստեղծել:

— Թող քո ասածը լինի,— համաձայնվեց կախարդը,— սրանից հետո քո այն նկարները միայն կկենդանանան, որոնք բնության ստեղծածից ավելի գեղեցիկ, ավելի կատարյալ կլինեն...

Այս խոսքերի հետ ծովը նորից եռաց, մի մեծ ալիք ողողեց ափը, որը ջնջեց, սրբեց Տյաո-Սյաոյի բոլոր անհաջող նկարները: Իսկ երբ ալիքը ետ քաշվեց, ափին մնաց միայն խոնավ, գորշ ավազը:

Երկար կանգնել ու մտածում էր Տյաո-Սյաոն, թե ինչ անի: Հետո գլուխգործոց փորձեց նկարել մի փոքրիկ թռչուն: Նա բոլորից լավ թռչուններ էր նկարում:

Բայց որքան էլ չարչարվեց, թռչունը չկենդանացավ:

— Ուրեմն, ինչպես հարկն է, ես չեմ կարողանում նկարել,— վճռեց Տյաոն,— ուրեմն ինձ հարկավոր է սովորել, վարպետություն ձեռք բերել, որպեսզի կարողանամ օգտագործել իմ շնորհքը:

Նա մտածկոտ դպրոց վերադարձավ ու նստեց նստարանին: Այդ օրվանից նա կարծես միանգամից փոխվեց: Այդ օրվանից և ոչ մի աշակերտ իր վարքով և սովորելով չկարողացավ համասարվել Տյաո-Սյաոյին:

Նա սովորեց գրել: Սովորեց գրքեր կարդալ: Ուսումնասիրեց բնագիտությունը: Տիրապետեց այն բոլոր գիտություններին, որոնք հայտնի էին մարդկանց: Սովորեց Չինաստանում ապրող բոլոր նկարիչների մոտ: Այցելեց Հնդկաստան և ուրիշ երկրներ, որտեղ հանճարեղ նկարիչներ էին ապրում:

Տյաո-Սյաոն ջանք չէր խնայում իր երազները իրականացնելու համար, առանց ձեռքերը ծալելու, գիշեր-ցերեկ աշխատում էր, որպեսզի կենդանանան իր նկարները: Նա ուզում էր, որ աշխարհում ավելի շատ ու ավելի գեղեցիկ կենդանիներ լինեն, քան կարող է ստեղծել բնությունը:

Եվ վերջապես նա հասավ իր նպատակին:

Նրան հաջողվեց նկարել մի ճերմակ աղավնի, որը կենդանացավ ու աշխույժ ճռվողելով իջավ նրա ուսին: Դա ամենագեղեցիկ աղավնին էր ամբողջ աշխարհում: Հետո նա նկարեց կաքավ, որի նմանը չէին տեսել ողջ Չինաստանում: Հետո՝ սիրամարգ, որը հիմա պատկերվում է ճենապակե բոլոր թասերի վրա: Նա նկարեց շատ ուրիշ սքանչելի կենդանիներ:

Իսկ երբ կատարելապես տիրապետում էր նկարչի մասնագիտությանը, այն ժամանակ միայն համարձակվեց նկարել բնության ամենաթանկագին

և ամենակատարելագործված ստեղծագործությունը՝ մարդուն։

Տյառ-Սյառն իր համար նկարեց մի չքնաղ կին և փոքրիկ շատ տղաներ ու աղջիկներ։ Նրանք այնքան լավիկն էին, որ բոլոր անցորդները հիանում էին։

Տյառ-Սյառն երջանիկ էր։ Շատ էր աշխատում, բայց, իհարկե, նրա ոչ բոլոր նկարներն էին կենդանանում։ Կենդանանում էին միայն այն նկարները, որոնցով նա կարողանում էր գերազանցել բնությանը։

Տարօրինակ նկարիչը մեռավ խոր ծերության հասած, իր մասին ժողովրդի մեջ թողնելով շատ լավ հիշողություններ։ Նա շատ էր սիրում երեխաներին և բոլորից գեղեցիկ ու լավ նրանց էր նկարում։

Ու հիմա էլ, Չինաստանի մի շարք գավառներում, երբ մարդիկ հանդիպում են գեղեցիկ երեխայի, ասում են.

— Տեսեք, ինչ հիանալի երեխա է, ինչքան գեղեցիկ, կարծես Սյառն է նկարել։

* * *

Այս պատմությունը շատ վաղուց է եղել։ Հետո շատերն են ցանկացել իմանալ հրաշալի նկարչի գաղտնիքը, բայց ոչ ոքի չի հաջողվել։

Երևի այդ նրանից է, որ շատ հազվադեպ, հազար տարին միայն մեկ անգամ է տաքանալու նպատակով ափ ելնում կախարդական կրիան, և ոչ մեկին չի հաջողվում այնպիսի երջանիկ հանդիպում ունենալ նրա հետ, ինչպես ունեցավ փոքրիկ Տյառ-Սյառն։ Կամ գուցե նրանից է, որ նկարիչներին չի հաջողվում գերազանցել բնությանը։

Ռուսերենից թարգմ. ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

# ՁՅՈ՛ՒՆ Է ԳԱԼԻՍ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ու՜... ինչքան ձյուն է գալիս... Այնքան շատ, այնքան առատ, որ լուսամուտից թե նայելու լինես բակ և ուզենաս տեսնել պարտեզի եղևնին, չես կարող։ Գորշ ամպերն այնպիսի թանձր վարագույր են կախել լուսամուտի առաջ, որ դրանից այն կողմ բան չի երևում։ Դիմացի կտուրի վրա ձյան հաստ շերտ է փռվել, ոնց որ շաքարով ծածկված թխվածք լինի...

— Վա՜յ, ինչքան շատ ձյուն է գալիս...

Լիլիթը կանգնել է լուսամուտի մոտ ու անթարթ նայում է։

Նա նոր է արթնացել։ Անկողնուց վեր է կացել թե չէ, բոբիկ ոտիկներով՝ տ՛ըպ-տ՛ըպ-տ՛ըպ... վազել է դեպի լուսամուտն ու դուրս է նայում։

— Լիլի՛թ, գուլպաներդ հագիր։

— Հիմա՜...

— Լիլի՛թ, շորերդ հագիր։

— Հիմա՜...

— Լիլի՛թ, շորերդ հագիր։

— Հիմա՜...

— Լիլի՛թ, կմրսես։

— Հիմա՜...



Մայրիկն շտապում է աշխատանքի, բայց մինչև որ Լիլիթին նախաճաշ չտա, չի կարող գնալ։ Հայրիկն էլ տանը չի...

— Լիլի՛թ, շուտ հագիր...

Հիմա՛...

— Քո «հիմանն» վերջ չունի,— բարկանում է մայրիկն ու Լիլիթի շորն ինքն է քաշում նրա գլուխը։

Լիլիթը թնկթնկում է, որ շորը մի պահ ծածկում է դրսի հմայիչ պատկերը, կարծես թե աչքերը կապում են։

Մամա ջան, ախր ձյուն է գալիս, է՜...

Մայրիկն արագ հագցնում է աղջկա գուլպաները, կոշիկները, սանրում է մազերը...

Հանկարծ Լիլիթը կիտում է հոնքերը, ուռցնում շրթունքները, ձեռքերը փոքրիկ-փոքրիկ բռունցքներ անում և ավելի է մոտենում լուսամուտին։

— Վա՜յ, վա՜յ... ի՞նչ է անում, ի՞նչ է անում էն մորաքույրը... ամբողջ ձյունը հավաքեց տարավ, լցրեց պարտեզը... կեղտոտեց... վա՜յ, ինչ փիսն է...

Լիլիթը մի պահ լուռ նայում է բակն ավլող դռնապանին, նրա սուր-սուր ճանկերով ցախավելին, կացնի պես կտրող բահին։ Եվ աղջկան թվում է, թե դա դռնապանը չէ, դա հեքիաթի սարսափելի վհուկն է, որ ագռավ է դարձել, իջել իրենց բակն ու քշում-հեռացնում է սպիտակ, մաքուր, պեծպեծին տվող ձյունը։

Եվ Լիլիթը ետ է դառնում ու ձեռքերը պարզած դիտում է մորը, նույնիսկ նախաճաշող եղբորը, որ իրենից մեծ է և արդեն դպրոց է գնում։

— Մի՛ թողեք, է՜, մի՛ թողեք մեր սիրուն ձյունը տանի թափի պարտեզը... Բա մենք ինչո՞վ պիտի խաղանք... մամա ջան, գնա ասա մորաքույրին, էլի...

Մայրիկը նախաճաշ է դրել սեղանին, թեյ է լցրել աղջկա փոքրիկ բաժակը։

— Արի՛, Լիլի՛թ ջան, արի կեր, որ քեզ տանեմ մանկապարտեզ ու գնամ աշխատանքի։

Լիլիթն արցունքոտ աչքերով նայում է նախաճաշին, ապա երկնքին, որ էլ ձյուն չի թափում և մոտենում է սեղանին։

Մեկ էլ հանկարծ նրա եղբայրն ուրախ բացականչում է.

— Ի՜նչ ես տզզում... էլի է գալիս...

Լիլիթը վեր է թռչում տեղից, վազում դեպի լուսամուտն ու նայելով բակ, կանչում.

— Ու՜խ, ու՜խ... Դե գնա... հո էլի է գալիս...

Նա ետ է նայում ու սրտանց ծիծաղում, ապա նորից դառնում է բակի կողմը։

— Ասա՛ գոնե ձեր դուռն ավլի, է՛լի... ու՞ր ես բակի ձյունը հավաքում տանում թափում հողի վրա,— գոռում է նա։

— Մի՛ գոռա,— ասում է մայրիկը։

Իսկ ինչու՞ է ավլում...

Լիլիթը կարծում է, թե իր ձայնը հասավ դռնապանին։ Դռնապանն մորաքույրը ավելը թողեց, ցախավելն ու բահը դրեց նստարանին ու գնաց տուն, երևի նախաճաշելու։ Լիլիթի եղբայրն էլ գնաց դպրոց։

Մայրիկը հագցնում է Լիլիթի վերարկուն, դնում գլխարկն ու երիզները կապ գցում ծնոտի տակ։ Իսկ Լիլիթն աչքը չի կտրում բակից...

Անդադար թափվում է ձյունը։ Կարծես ամպոտ երկինքը մի վիթխարի մաղ է, ու հսկայական մի տատիկ ծալապատիկ նստած ալյուր է մաղում քաղաքի վրա։ Լիլիթը նայում է այգու եղևնուն ու ժպտում։ Նրան թվում է, թե եղևնին կիտել է սպիտակած ու թավ հոնքերը։ Այդ ինչու՞ է տխրել եղևնին, բա կտխրե՞ն, երբ այդքան շատ ձյուն է գալիս...

Լիլիթն ու մայրիկը դուրս են գալիս տնից։ Փողոցում կարծես թե ձյունն ավելի շատացավ։ Լիլիթըն իսկույն կռանում է, երկու բուռ ձյուն է վերցնում, գնդիկ շինում ու խփում է մայրիկին։ Եվ նորից ծիծաղում է զնգուն կարկաչով...

Ու՜... ինչքան ձյուն է գալիս... սպիտակ, մաքուր, պսպղուն ձյուն... Ա՜յ թե կխաղան այսօր Լիլիթն ու եղբայրը... Բոլոր երեխաներն էլ կխաղան, բոլորը...



# ՄԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԻՑԸ

Երբ անցնում ես Հայաստանի պետական պատկերասրահով, դահլիճներից մեկում հանկարծ կանգ ես առնում։ Այստեղ լույսն ավելի շատ է կարծես, ասես օրը միանգամից փոխվում է, և պատուհաններն սկսում են ավելի լավ լուսավորել։

Դու Սարյանի սրահում ես։

Մտնում ես ներս, և միանգամից փոխվում է նաև քո տրամադրությունը։ Սիրտդ սկսում է երգել և այնպես է քեզ թվում, թե թևեր ունես ու ճախրում ես հայկական լեռնաշխարհով, տեսնում գեղանիստ սարերն ու կանաչախիտ անտառները, ալպիական գունավառ ծաղիկներն ու ցորենի հասուն արտերը, որոնք դեղին ու նարնջագույն շերտերով փռվել են լեռների կրծքին։ Եվ բոլորն էլ ողողված են առատ լույսով, արևի շռայլ ճառագայթներով։

Պատերից քեզ են նայում Հայաստանի նշանավոր մարդիկ՝ կենդանի, խորը հայացքով։

Սարյանի դահլիճում միշտ կգտնես մարդկանց, որոնք կանգնում են այնտեղ ժամերով՝ հմայված մեծ նկարչի ստեղծագործություններով։ Շատերը նրանցից եկվորներ են, Սովետական Միության տարբեր ծայրերից և նույնիսկ աշխարհի տարբեր երկրներից։ Իսկ ինչքա՜ն այցելուներ կան նկարչի արվեստանոցում։

Երբ արտասահմանից և եղբայրական ռեսպուբլիկաներից պատվիրակություններ են գալիս Հայաստան, նրանք այցելում են նաև Մարտիրոս Սարյանին։ Շատերը դեռ օդանավակայանում հարցնում են. «Իսկ Սարյանը քաղաքո՞ւմ է», «Ինչպե՞ս է զգում իրեն, աշխատո՞ւմ է»։ Ամեն մի այցելու երջանիկ է զգում իրեն, երբ մուտք է գործում Լենինի պողոտայի նրբանցքում գտնվող նրա առանձնատունը, տեսնում




ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ




ՇԱՐԱ ՏԱԼՅԱՆ

ծերունազարդ վարպետին, խոսում նրա հետ։

Եվ դա պատահական չէ։ Չէ՞ որ Մարտիրոս Սարյանը աշխարհի ամենամեծ նկարիչներից մեկն է, այն շատ քչերից մեկը, որոնց սիրում են բոլոր նրանք, ովքեր սիրում են գեղեցիկը։

Սովետական անվանի գրող Իլյա Էրենբուրգը նրա մասին գրել է. «Սարյանը խոշորագույն նկարիչներից մեկն է, եթե ոչ՝ Սովետական Միության ամենամեծ նկարիչը»։

Լրացավ մեր մեծ հայրենակցի ութսուն տարին։ Ութսունամյա Մարտիրոս Սարյանը շարունակում է ստեղծագործել երիտասարդական ավյունով։ Նրա վրձինը շարունակում է հրաշքներ գործել, հարստացնելով ոչ միայն Սովետական Միության ու Հայաստանի, այլև ամբողջ աշխարհի նկարչական գանձարանը։



ԽՆԿՈ ԱՊԵՐ




ՆԻԿ. ՏԻԳՐԱՆՅԱՆ




ԳՐ. ՂԱՓԱՆՑՅԱՆ

# ԱՐՏԱՍՈՎՈՐ ԽՈՐՀԱԿՑՈՒԹՅՈՒՆ ԲԺՇԿԱՐԱՆԻ ՏԱԿ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

*Դպրոցական սրահի բեմահարթակը ճռռաց հավաքարարի ոտքերի տակ, ու բեմատակի կիսախավարում իրար վրա թափված, ջարդված աթոռները նորից արթնացան։*

*— Այդ ո՞վ էր,— դեմքը թթվացնելով, հարցրեց ջարդված բազկաթոռի առյուծադեմ-թիկնատեղը։*

*— Հավատացեք, ես չէի, Ձերդ մեծություն,— նվաղած ձայնով շշնջաց վիեննական աթոռը, որն իր ողորկ թեւով կախ էր ընկել նորին մեծության փոշոտված վզից։*

*— Բավակա՛ն է նվնվաք,— վրա բերեց նախկին տիրակալը։— Ձեզ հետ չե՞մ... Այդ ո՞վ էր նորից քունս խանգարեց։*

*— Երևի այդ անիծած մուկն էր,— շշնջաց Թբիլիսիից դեռ երկու տարի առաջ երրորդ դասարան ընդունված կարմրադեմ աթոռը, որն արդեն երկար ժամանակ էր, ինչ տնքում էր թեև անդամալույծ, բայց ընկուզենուց շինված ծանրամարմին բազկաթոռի տակ։*

*— Մու՛կը... մու՛կը...— գայրացավ առյուծագլուխը։— Դա մկա՞ն բան էր։*

*— Ճիշտ հրամայեցիք,— մեջ ընկավ չորրորդ դասարանի ամբիոնի ոտնապատվանդանը։— Մուկը վաղուց է հեռացել։*

*— Ինչի՞ց գիտես,— վրա տվեց հինգերորդ դասարանցի դեղնադեմ աթոռը, սիրտ առնելով այն բանից, որ իր և խստաբարո բազկաթոռի միջև ընկած էին ոտքով ու գլխով իրար խառնված մի քանի տարբեր դասարանցիներ։*

*— Բա՛ն ասաց... Ես գիտեմ, որովհետև մուկը իմ գրկումն էր բուն դրել,— պատասխանեց ոտնապատվանդանը։*

*— Ճիշտ է ասում,— երեսին քաշած պատռված թաշկինակի տակից հորանջեց առաջին դասարանի ուսուցչական միտանի աթոռը,— մուկը ձմեռանոց է գնացել։*





*— Ձր-մե-ռա-նո՞ց,— սարսափով հարցրեց կիսախանձ աթոռի ոտքը,— ձմեռն արդեն եկե՞լ է... Ասեք, կորանք է՛լի...*

*— Ինչու՞,— խռպոտ ձայնով հարցրեց առյուծադեմ տիրակալը։*

*— Դե... Ձերդ մեծություն... ձմեռանոց ասածդ՝ ներքնահարկն է, ուր գտնվում է ջեռուցման հնոցը։ Ախր ես հազիվ եմ էնտեղից ազատվել... Եթե դասերը շուտ չսկսվեին, ես իմ մարմնի մյուս անդամների պես վաղուց արդեն մոխրացած կլինեի քարածխային լավայի մեջ...*

*Լավ էլ կլինեի... Քո նման անպետքների տեղը այնտեղ է,— որոտաց առյուծադեմ բազկաթոռը։*

*Իզուր եք բարկանում,— դա՛ռնորեն վրա բերեց կիսախանձ ոտքը։ Մի ժամանակ ես էլ եմ*

ձեզնից ոչ պակաս փառք ունեցել: Ես թատերասրահի առաջին շարքի աթոռներից եմ... Ի՜նչ արած, որ ոտքի տակ գնացի մի քանի չարաճճի աշակերտների պատճառով... Հետո էլ, Ձերդ մեծությո՛ւն, Ձեզ էլ է հնոցը ընկնելու բախտը սպառնում, եթե խելացի ձեռն ընկել է:

Ինչպե՞ս,— ահեղ բաշը ցնցելով, որոտաց առյուծագլուխը:

Այո՛, այո՛, կրկնեց խածնվածը: —Երբ ես նորաստեղծ էի, իմ սեփական ականջներով, այո, այն ժամանակ դեռ մյուս ականջս էլ կար, լսեցի, թե ինչպես էր նորապսակ Վարդանը տանտիրոջից խնդրում, որ նա թույլ տա Ձեզ էլ մի բիչ տաքացնելու... Ձեր բախտը բերեց, որ ձմեռը կարճատև էր...

Ա՜խ, սկսեց հեկեկալ վիեննացի տիկինը: — Մի՞թե մեզ պետք է կենդանի-կենդանի այրեն:



Տիկնոջ հեծկլտանքը բոլորին էլ հուզեց: Հուզվեց ու փափկեց նաև զոռոզ առյուծագլուխը: Իսկ եթե խածնվածը ճիշտ լինե՞ր...

Տանտերը ի՞նչ պատասխանեց,— դողդոջ ձայնով հարցրեց նա խածնվածին:

— Գլուխն օրորեց և ինչ-որ մի բան էլ ասաց, բայց ես չկարողացա լսել, որովհետև քեռի Վարդանը ոտքի տակ առած՝ անդամահատում էր ինձ:

Կորա՜նք...— հառաչեցին բոլորը:

Տիրեց լռություն:

Առյուծագլուխը մտածում էր... Դե, ճիշտ են ասում, որ մահից առաջ ամենազոռոզ հոգիներն էլ անգամ հաշտվում են մինչ այդ իրենցից ստոր համարվածների հետ, խոստովանում հին մեղքերը՝ թողություն խնդրում իրենց կատարած չար գործերի համար: Եվ առաջին անգամ իր կյանքում, առյուծագլուխ թիկնատեղը քաղցր ու սիրալիր ձայնով դարձավ իր դժբախտության ընկերներին:

— Դե, որ մահներս եկել է,— ասաց նա,— քաջորեն էլ պիտի մեռնենք: Բայց ես կուզենայի իմանալ, թե ու՞մ հետ եմ բանտարկված եղել այստեղ և ու՞մ հետ պիտի վառվեմ Վարդանի հնոցում: Առաջինը դուք սկսեք, տիկին, և բավական է լաց լինեք,— դարձավ նա վիեննուհուն:

— Ես իրավունք ունեմ այսպես արտահայտվելու,— հեծկլտաց թշվառ վիեննուհին:—Դուք այդ կիմանաք, երբ լսեք իմ կորած երջանկության պատմությունը...

— Միայն թե կարճ,— մոռանալով գալիք սարսափները, առաջվա նման հրամայեց բազկաթոռի թիկնատեղը, որը՝ արդեն սովորել էր կարճ ու սեղմ զեկուցումներ լսել:

— Իհարկե կարճ,— հառաչեց վիեննուհին արցունքները կուլ տալով:— Ես սերում եմ հենց այն դարավոր անտառից, ուր մի ժամանակ իր վալսերը հորինելով, սիրում էր թափառել ինքը՝ Շտրաուսը: Եվ ես, բարձրահասակ կաղնուց սերված, կարճահասակ. չորրորդ դասարանցի Արմիկ Բադամյանի զոհը դարձա: Մի անգամ նա սուր մեխեր ունեցող ֆուտբոլի կոշիկներով բարձրացավ վրաս, այսինքն կանգնեց ուղղակի դեմքիս վրա... Ցավից այնպես ճչացի, որ բերանս պատռվեց ու նա զույգ ոտքերով կուլ գնաց... Հետո թե ինչպես օդում մահվան օղակներ կատարելով ընկանք, թե ինչպես կտրվեց իմ սրակրունկ կոշիկը, ու թե ինչպես ընկա այստեղ, չեմ հիշում...

— Պարզ է,— մռնչաց առյուծագլուխը:— Հետևյա՛լը:

— Հերթն իմն է,— մեջ ընկավ ոտնապատվանդանը:



— Քեզ խոսք չի հասնում,— վրա բերեց Թիկնատեղը:— Դու հո ախոռ չե՞ս...

— Բայց շատ հետաքրքիր է, Ձեր մեծությու՜ն...

— Լավ, սուս... միայն թե երկու բառով: Չկարծես, որ եթե երեք բերան ունես, ամեն մեկով էլ պետք է խոսես:

— Մի անգամ Սուրիկը առաջին դասարանցի մի աղջկա մազերը քաշել էր և ուսմասվարի ձեռքից փախչելով, հույս ուներ իմ մեջքով դասարանի դուռը ներսից ամրապնդել, որից էլ ողնաշարս ճռճռաց, ու մի երկու հող՝ խրոթ... Երկրորդ անգամ էլ...

— Բավական է,— զայրացավ Թիկնատեղը:— Դու ի՞նչ ես եղել, որ մի գլուխ ճռ՜ռ հա ճռ՜ռ... Լռի՛ր, պետք չէ: Դե, էլ ո՞վ կա այդտեղ:

— Ես,— հառաչեց Թեխիխացին,— կարելի՞ է...

— Խոսքը հյուրինն է,— ասաց Թիկնատեղը:

— Ես Գեորգյանի զոհն եմ,— հեկալով ասաց Թեխիխացին:— Այդ երկու մետրաչափ հասակ ունեցող ծույլը, փոխանակ դասերը սովորելու, խելքը տվել է «Մուսկվիչներին» ու «Զիմերին»... Անցյալ տարի, առանց ամաչելու նա ինձ ավտո էր շինել ու հենց դասարանում նեծել վրաս... Դեսից-դենից աղմուկով էնպես վրա տվեցին, որ...

— Պարզ է, ուրի՞շ,— ընդհատեց Թիկնատեղը:

Հանկարծ մի անասելի ժխոր բարձրացավ: Գլուխկոնծի տված, մեկը-մյուսին փաթաթված աթոռակույտը այնպես իրար անցավ, որ ոչինչ չէր հասկացվում: Նրանցից ամեն մեկը ցանկանում էր իրեն առաջ ընկնել:

— Լռությու՜ն,— գոռաց Թիկնատեղը,— անամոթնե՛ր... Ձեզ տեղն է, որ էդ օրն եք ընկել... Անկարգներ...

Բայց հենց այդ պահին ինչ-որ ճռնչոց լսվեց, և զայրացած Թիկնատեղի խոսքը կիսատ մնաց: Բեմատակի խավարի մեջ փայլատակեց լույսի շողը, հետո ոտնաձայներ լսվեցին, այո, վաղուց մոռացված մարդկային ոտնաձայներ:

— Այս կողմն է, այս կողմը,— լսվեց հանկարծ տնտեսվար Մարգարյանի ծանոթ ձայնը,— կամաց, կռացած քայլեք, գլուխներդ չծակեք... Բեմահարթակի տակ ցցված մեխեր կան...

— Եկա՜ն...— սարսափից դողալով շշնջաց աթոռի խանձված ոտքը,— հոգ են տանելու...

Եվ հենց այդ վայրկյանին, ինչ-որ խարխափող ձեռք, խավարի մեջ շոշափելով առյուծագլխի բաշը, ապա Թեխիխցու ուսը, հանկարծ ամուր կերպով բռնեց վիեննուհու սարսափից փշաքաղված, ողորկ ու սառը թևից...

— Օգնեցե՜ք,— ճչաց վիեննուհին և տեղն ու տեղը ուշաթափվեց:

Նրա ճիչը խլացավ Թշվառ աթոռների բողոքանուր վայնասունի մեջ...



* * *

Բեմահարթակի տակ կատարված սարսափելի դեպքից ուղիղ տասն՝ րկու օր հետո, մի ուրախ անցուդարձ էր կատարվում հենց նույն բեմահարթակի վրա:

Կարմիր մահուդով ծածկված սեղանին կամրջի պես թեքված, միշտ խոժոռ ու ինչ-որ բանից միշտ դժգոհ՝ տնտեսվար Մարգարյանը զարմանալի կերպով ժպտադեմ էր: Նա խոսում էր դանդաղ ու ծոր տալով, ասես չուզենալով սպառել իրեն այնքան ուրախություն պատճառող ելույթը:

Իսկ ինչու՞ էր նա ուրախ: Ի՞նչ էր պատահել:

Ինչ էր պատահե՞լ։ Ահա թե ինչ…

Կարմիր պաստառով ծածկված նախագահության սեղանի առաջ, բեմի մի ծայրից մյուսը շարված էր տարբեր տեսակի ու գույնի աթոռների մի հավաքածու։ Նրանք բոլորն էլ փայլում էին ու ժպտում։ Նրանք հիշում էին դպրոցի ատաղձագործական արհեստանոցում իրենց ծանր ու դժվարին վիրահատումների մասին, հիշում էին, թե ինչպես էին իրենց կոտրված անդամների փոխարեն նորերը սոսնձում, և հիմա էլ ամբողջ դահլիճով տարածել էին հաճելի օծանելիքի՝ լաքի հոտը։

Այսօր բեմահարթակի վրա էին հավաքվել բոլոր այն աթոռները, որոնք դեռ տասներկու օր առաջ խավարի մեջ իրար փարված, հոռետես խանձված ոտքի կարծիքով, սպասում էին հնոցում կայանալիք իրենց մահապատժին։ Զարմանալի էր, որ աղյուսագույն ազնվականը ներկա չէր ուրախ հանդեսին։

Այո, բացակայում էր դաժան տիրակալը։ Այդ պահին նա գտնվում էր ատաղձագործական արհեստանոցի պատի տակ։ Շշուկներ կային, որ տղաները որոշել են որպես անցյալի մնացուկի, նրան օգտագործել միայն դպրոցական թանգարանում։

Իսկ չորրորդ դասարանցի ոտնապատվանդա՞նը, կհարցնեք դուք, իսկ աթոռի խանձված ո՞տքը…

Նրանք այդ պահին իրենց նախկին տեղումն էին ընկած և խավար բեմահարթակի տակից լսում էին վերի անցուդարձը։

— Օ՜խ… օ՜խ… օ՜խ,— իր երեք բերանով երեք անգամ հառաչեց եռերեսանի ոտնապատվանդանը,— բոլորն էլ մարդ դարձան, միայն մենք մնացինք…

Լուռ էր աթոռի խանձված ոտքը։ Ամբողջ հասակով մեկ տարածված բեմահարթակի տակի խավարում՝ ոչ մեռած, ոչ կենդանի, խորին հուսահատությամբ ու սարսափով լցված, նա սպասում էր հնոցապան Վարդանի ծանոթ ոտնաձայնին։

# ԽՌՈՎԿԱՆ ԿԱՐՈՆ

Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ծածկել է, տե՛ս, սար ու ձոր
Ճերմակ թավիշը ձյունի,
Դահուկներով մենք այսօր
Դուրս ենք եկել մրցումի։

Էլ ո՞վ ասես, որ չկա.
Ահա Աշիկն ու Ռիտան,
Սա էլ Կարոն խռովկան՝
Նորից հոնքերը կիտած։

Խռովել է երեկ,
Որ իրեն դաս չեմ հուշում.
Անգամ տված բարևիս
Պատասխանել չի ուզում։

— Մա՛րշ… ու բոլորս վերից
Վար սահեցինք սրընթաց,
Ճամփի կեսին, մեկ էլ ի՞նչ,
Կարոն գետնին թրմփաց։

Ես կանգ առա, կռացա
Ու օգնեցի՝ վեր կենալ.
Բոլորն եկան ու անցան,
Ետ մնացինք ես ու նա։

Բայց ես ուրա՜խ եմ նորից,
Չէ՞ որ Կարոն խռովկան
Չխռովեց այդ օրից
Ինձ հետ էլ ո՛չ մի անգամ։



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԼՈՒՍԻՆ ԹՌՉՈՂ ԴԵՐՁԱԿԸ

*(ԱՆԳԼԻԱԿԱՆ ՀԵՔԻԱԹ)*

Շա՜տ-շատ տարիներ առաջ ապրում էր մի մարդ, որը ցանկանում էր լուսին թռչել։ Նա դերձակ էր և աշխատում էր ծալապատիկ նստած։

Պարզ է, որ ամբողջ օրն անշարժ նստած մարդու համար լավ ցատկելն անհնարին է։ Այնուամենայնիվ, նա շատ հիանալի ցատկող էր։ Մարդիկ ասում էին.

—Ի՜նչ հիմարություն, ցատկել լուսին։ Դա բոլորովին խելքի մոտիկ բան չէ...

Բայց Թիմոդին, այսպես էր դերձակի անունը, շատ լավ էր ցատկում և ամեն օր՝ ավելի ու ավելի բարձր։

Պետք է ասեմ, որ նա ապրել է շա՜տ-շատ տարիներ առաջ, երբ մարդիկ խիստ տարօրինակ բաներ էին անում։

Շուտով Թիմոդին կարողանում էր ցատկել պարտեզի ցանկապատի վրայից։ Հետո նա սկսեց տան բարձրությամբ ցատկել, ապա՝ տնից բարձր, հետո՝ քաղաքային խորհրդարանի բարձրությամբ և վերջապես՝ զանգակատան։ Նա այդ մասին շատ չէր խոսում։ Այդ վարժություններով նա զբաղվում էր վաղ առավոտյան, երբ շրջակայքում ոչ մի մարդ չէր լինում։

Երբ մարդիկ տեսնում էին օդում վեր բարձրացող փոքր, սև մի գունդ, ասում էին.

—Ահա՛ Թիմոդին՝ մեր դերձակը։ Նա նորից ցատկում է։ Նա շատ լավ ցատկող է և ուզում է լուսին թռչել։

Թիմոդիի կինը այդ մասին լսել անգամ չէր ուզում։ Նա հաճախ ասում էր.

—Ի՞նչ օգուտ դրանից։ Դու միայն ոտքերդ կջարդես։ Հիմա շատ լավ ես ցատկում, հասնում ես մինչև զանգակատուն։ Մի՞թե այդքանը բավական չէ։

Բայց Թիմոդին ուշադրություն չէր դարձնում կնոջ խոսքերին։ Նա ցանկանում էր լուսին ցատկել։

Թիմոդին ուզում էր տեսնել, թե իրենից ի՞նչ է ներկայացնում լուսինը։ Նա մտածում էր. «Մի՞թե լուսինը կանաչ պանրից է պատրաստված, ինչպես ոմանք ասում են։ Արդյոք այնտեղ մարդիկ ապրու՞մ են։ Հետաքրքիր է, ինչպիսի՞ն է լուսնի մյուս կողմը»։

Իհարկե, մարդիկ այժմ այդ բոլորը գիտեն, բայց սա պատահել է, ինչպես ես ասացի, շա՜տ-շատ տարիներ առաջ։

Թիմոդին շարունակում էր վարժություններ անել։ Վերջապես նա զգաց, որ պատրաստ է մեծ փորձության համար։ Մի գեղեցիկ լուսնկա գիշեր քաղաքի բոլոր մարդիկ հավաքվել էին շուկայի հրապարակում։ Նրանք եկել էին տեսնելու, թե ինչպես է Թիմոդին իրագործելու իր թռիչքը։

—Մեզ համար կանաչ պանիր կբերես,—ասում էին ոմանք։






—Ջմռռանաս, որ պանիրն անցքեր ունի: Զգույշ մնա, հանկարծ նրանց մեջ չընկնես,—ծիծաղում էին մյուսները:

Ոմանք էլ շատ լուրջ-լուրջ ասում էին.

—Շուտ վերադարձիր, Թիմոդի: Երկար չմնաս այնտեղ: Լուսինը տարօրինակ վայր է, և կարող է պատահել, որ դու լուսնոտ դառնաս:

Թիմոդին շատ հանգիստ էր: Նա ուշադրություն չէր դարձնում մարդկանց կատակների վրա: Նա կանգնած էր հրապարակի կենտրոնում ու ժպտում էր:

—Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, առա՜ջ,—ասաց նա և վեր ցատկեց: Մարդիկ տեսան, թե ինչպես է նա բարձրանում վե՜ր, վե՜ր, ավելի վեր: Հիանալի տեսարան էր: Վերջապես Թիմոդին անհայտացավ երկընքում: Լսվեցին բացականչություններ.

—Նա կհասնի՜, կհասնի՜:

Եվ իսկապես, թվում էր, որ այդպես է:

Բայց, ավա՜ղ: Դերձակ Թիմոդին շատ բարձր ցատկեց և դրա համար էլ չընկավ լուսնի վրա, այլ, շրջանցելով այն, կրկին ցած իջավ: Դե, իհարկե, դա շատ ցավալի էր:—Չէ՞ր կարող արդյոք նա նորից փորձել,—կհարցնեք դուք:

Հենց սա էլ հեքիաթի ամենացավալի մասն է: Թիմոդին այնպես թափով ետ եկավ, որ ջարդեց ոտքերից մեկը: Ինչպես դուք գիտեք, լուսինը շա՜տ, շա՜տ բարձր է:

Ափսո՜ս:

Եվ նա այլևս ի վիճակի չէր նորից ցատկելու: Բայց նա լավ դերձակ էր և շարունակեց իր աշխատանքն ու շատ լավ գործեր արեց:

—Ահա Թիմոդին,—ասում էին մարդիկ օտարականներին,—որ լուսնի վրայով ցատկեց: Եվ օտարականները գնում էին նրան տեսնելու: Նրանք զրուցում էին Թիմոդիի հետ ու հարցնում, թե ինչպիսի՞ն էր լուսինը:

Բայց Թիմոդին ի՞նչ կարող էր պատասխանել:

Նա երջանիկ ապրում էր իր կնոջ հետ, բայց կինը չէր կարողանում մոռանալ նրա թռիչքը դեպի լուսին: Ժամանակ առ ժամանակ նա ասում էր.

—Իսկապես որ քո արածը մեծ հիմարություն էր: Ես քեզ ասում էի. «Թիմոդի զգույշ մնա»: Չես կարող ուրանալ, որ ես քեզ զգուշացրել եմ:

Բայց Թիմոդին լռում էր ու չէր պատասխանում: Ի՞նչ օգուտ դրանից:

Նա չթռավ լուսին:

Նա չիմացավ, թե ինչպիսին է լուսինը: Տեսնո՞ւմ եք, որ մարդիկ միշտ էլ ձգտել են հայտնագործել անհայտը:

*Անգլերենից թարգմանեց՝ Մ. ՍԵՖԵՐՅԱՆ*



*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*




ԶԱՎԵՆ ԹԱԹՈՒԼՅԱՆ

Մի գառնուկ ունեինք, անունը՝ Մաշո։ Մեր գառներից ոչ մեկին այնքան չենք սիրել, որքան Մաշոյին, մաքուր ու սիրունիկ, չարաճճի ու խենթուկ Մաշոյին... Գյուղում մարդ կա՞ր, որ չճանաչեր նրան։ Շնիկի բնավորություն ուներ Մաշոն։ Որտեղ՝ մենք, այնտեղ էլ՝ նա, պահմտոցի խաղալիս էլ, վազ էր տալիս մեր ետևից և թաքնվում մեզ հետ։ Մի խոսքով՝ զվարճալի բաներ շատ էր անում։ Երբ ծիծաղում էինք, Մաշոն զանազան ձայներ էր հանում, ասես ինքն էլ էր ծիծաղում մեզ հետ և սկսում էր վազվզել մեր շուրջը...

Մաշոն նույնիսկ տատիկիս սիրտն էլ էր շահել։ Իսկ գիտե՞ք, թե ինչ խիստ է տատիկս։ Նա միայն մեր կովին է սիրում, նույնիսկ հետը խոսում է... Տատիկս չէր բարկանում, երբ Մաշոն մտնում էր մեր սենյակները՝ մեզ հետ խաղալու։ Անգամ թույլ էր տալիս, որ Մաշոն բարձրանա թախտի վրա ու քնի։

Երբ ճաշում էինք, Մաշոն հերթով մոտենում էր մայրիկիս, տատիկիս, հայրիկիս, քույրիկիս և ինձ, փոքրիկ եղջյուրներով սկսում էր մեզ բոթել, թե՝ ինձ էլ տվեք, ուտեմ։ Ինչ տալիս էինք, ուտում էր, չէմուչում չէր անում. է՛լ բողկ, է՛լ գազար, է՛լ շաքար։ Իսկ կոնֆետները հենց թղթով էր ուտում։

Ա՜յ, թե ինչպիսին էր մեր գառնուկը...

Սակայն մեր Մաշոն շատ նախանձոտ էր, այն էլ ինչպիսի՜ն... Ուզում էր, որ միայն իրենով զբաղվենք, իր հետ խաղանք, լավ-լավ բաները միայն իրեն տանք։ Նրան դուր չէր գալիս, երբ մենք սիրում ու փաղաքշում էինք մեր շանը, կատվին, հորթուկին։ Նախանձից սկսում էր եղջյուրներով խփել։ Երբեմն ցավեցնում էր չարաճճին։ Մի խոսքով՝ շատ նախանձոտ էր, բայց էլի սիրում էինք նրան...

Քանի տեղն եկավ, պիտի ասեմ։

Մի նախանձոտն էլ մեր դասարանում կա։ Նրան Սիցիկ ենք կանչում, բայց իսկական անունը, ազնիվ խոսք, Սիցիլիա է... Ինչ որ է։ Նա գերազանցիկ աշակերտուհի է, սակայն, ինչ արած, որ նախանձ է ու լալկան։ Մեկ-մեկ «4» էլ է ստանում, բայց ձայն չի հանում։ Սակայն, վայ, թե հանկարծ մի ուրիշը «5» ստանա, իսկ ինքը՝ «4», այնքան լաց կլինի, որ ականջդ փակիր ու փախիր։

Իսկ մեր Մաշո՞ն։ Դե, նա ո՞նց հասկանար, որ նախանձ լինելը լավ բան չէ։ Դրա համար էլ գլխին այնպիսի մի փորձանք եկավ, որ... Խե՜ղճ Մաշո...

* * *

Հայրիկս պահարան էր գնել՝ մեծ հայելիով։ Առաջին օրերը ես և քույրիկս հայելու առաջից չէինք հեռանում. պար էինք գալիս, ցատկոտում, լեզու հանում։ Իսկ Մաշո՞ն, երբ իր պատկերը հայելու մեջ տեսավ, շատ բարկացավ։ Կարծում էր, որ դա մի ուրիշ գառնուկ է։ Կարծում էր, որ իրենից բացի մենք ուրիշ գառնուկի էլ ենք սիրում, ո՜նց էր նախանձում։ Մեկ էլ տեսար, մեզ մի կողմ էր հրում, թե՝ մի կացեք, սրան ցույց տամ։



Նկ. Հ. ՄԱՄՅԱՆԻ

Ես ու քույրիկս ծիծաղից թուլանում էինք: Նրան զոռով տանում էինք պահարանի մոտ, որպեսզի սովորեցնենք, թե հայելու միջինը ուրիշ գառնուկ չէ, այլ ինքն է։ Հասկանո՞ւմ էր որ: Դեռ խռովում էլ էր։ Սկսում էինք նրան փաղաքշել, սակայն նա ավելի էր չարանում, կարծելով, որ մենք ոչ թե իրեն ենք փաղաքշում, այլ հայելու միջի գառնուկին։ Թաքուն հետևում էինք, թե հետո ի՞նչ էր անելու։ Մաշոն մի կողմ էր քաշվում, մի քիչ մտածում էր, մեկ էլ միտքը փոխելով, մոտենում էր հայելուն և խեթ-խեթ նայում իր ձևերն անող էն «մյուս» գառնուկին։ Ուզում էր հարձակվել, բայց սիրտ չէր անում, ետ-ետ էր գնում ու հեռվից նայում իրեն բանի տեղ չդնող «էն» աներեսի վրա:

Այդպես էլ՝ Մաշոն չսովորեց ու մինչև վերջն էլ նախանձ մնաց:

...Մի անգամ սենյակում շրխկոց լսվեց։ Իսկույն ներս վազեցինք: Եվ ի՜նչ տեսնենք... Հայելու կեսը չկար։ Այդ Մաշոն էր ջարդել... Նա դեռ նայում էր պահարանին՝ զարմանալով, թե ո՞ւր էր կորել իր «հակառակորդը»։ Ուրախությունից ո՜նց կգար, եթե տատիկս բարկացած չհանդիմաներ նրան.

— Ա՜յ, գետինը մտնես դու, սատանա... Ա՜յ, սև-երես մնաս դու, անպիտան...

Մաշոն գլուխը շրջելով՝ խեղճ-խեղճ նայեց տատիկիս ու հանկարծ փռվեց հատակին։ Նոր միայն նկատեցինք, որ նրա եղջյուրներից մեկը պոկվել է, և թշշալով արյուն է գալիս։ Ես ու քույրիկս սկսեցինք լաց լինել: Հայրիկս շտապ դուրս գնաց՝ քեռի Սեսրոպին կանչելու։ Քեռի Սեսրոպը եկավ և կապեց Մաշոյի գլուխը։ Հետո նա հայրիկիս ասաց, որ Մաշոյի վիճակը վատ է, լավ կլինի մորթել։ Երբ ես ու քույրիկս ավելի շատ լաց եղանք, հայրիկս խոստացավ, որ չի մորթի և քեռի Սեսրոպին խնդրեց, որ անպայման առողջացնի մեր Մաշոյին։

Գիշերը ես և քույրիկս չէինք կարողանում քնել. անկողնում պառկած՝ հա մտածում էինք խեղճ Մաշոյի մասին։ Երկուսով որոշեցինք, որ եթե քեռի Սեսրոպը նրան չբուժի, մենք պիտի բուժենք։ Նրան լավ-լավ բաներ էինք տալու, դեղ էլ պիտի խմեցնեինք. մեր բաժին կոնֆետներն ու գաթաները նրան էինք տալու, որպեսզի Մաշոն ուտեր, շուտ լավանար...

Երբ լավանար, նրա գլխին նոր եղջյուր էր դուրս գալու՝ կլոր ու ոլորուն: Դե, այդ ժամանակ Մաշոն խելոքանալու էր. չէ՞ որ արդեն խրատվել էր և գիտեր, որ նախանձ լինելը լավ բան չէ։ Երբ լավանար, Մաշոն էլ ոչ մի անգամ չէր նախանձելու, նույնիսկ իսկական գառնուկին էլ չէր նախանձելու... Միայն թե լավանար...

# ՀՆՈՑԱՊԱՆ

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

*Առվի ափին դիզվեց սառույց,*
*Կյանքը բռնեց ձմռան ճամփան,*
*Շենքի տակ մեր նորակառույց*
*Գործի անցար, հնոցապան:*
*Մեր տներում դառնում է խինդ*
*Քո վեր ճամփած տաք գոլորշին,*
*Մինչդեռ, եղբայր, գանգուրներիդ*
*Նստում է սև ածխափոշին:*
*Երգ է ասում կարծես գարնան*
*Հնոցդ մեղմ ու հանդարտիկ,*
*Բանում ես դու գիշերն անցամ,*
*Որ չմրսեն քնած մարդիկ:*
*Երբ մանկիկս չորս տարեկան*
*Վազվզում է տանն իմ տաքուկ,*
*Թվում է, թե, իմ բարեկամ,*
*Դու կրակն ես ճամփել հոգուդ:*
*Կրակի պես արդյոք սրտին*
*Կա՞ մտերիմ ուրիշ մի գանձ,*
*Երանի՜ քեզ, որ այս ցրտին*
*Ջերմություն ես տալիս մարդկանց:*



Նկ. Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՄԻՇՏ ՄԻԱՍԻՆ

Բ. ՄԻՐԱՔՅԱՆ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ՊԻԵՍ ԵՐԵՔ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՄԲ, ԵՐԿՈՒ ՊԱՏԿԵՐՈՎ

### ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

*ՆԻՆԱ—ջոկատավարուհի*
*ՎԱՐԴԱՆ—պիոներ*
*ԱՆԱՀԻՏ »*
*ՀԵՆՐԻԿ »* — 6-րդ դասարանի աշակերտներ
*ՌՈՒԲԻԿ »*
*ԴԱՎԻԹ »*
*ՍԱՐՈ—պիոներ, 4-րդ դասարանի աշակերտ*

## ԱՌԱՋԻՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

### ԱՌԱՋԻՆ ՊԱՏԿԵՐ

*Վարագույրի հետևից հնչում է պիոներական երգը, որից հետո պիոներական գեփգը և «Մի՛շտ պատրաստ» պատասխանը: Դրան հետևում է ջոկատավարի ձայնը. «Ցրվե՜լ»: Վարագույրի առաջ երևում են Նինան, Վարդանը, Անահիտը, Ռուբիկը և Հենրիկը:*

ՆԻՆԱ.—Պետք է այնպես անենք, որ պիոներական «աստիճաններով» քայլելիս մեր օղակը առաջինը լինի:

ՎԱՐԴԱՆ.—Ինչպե՞ս առաջինը լինես, երբ Դավիթը օղակի աշխատանքներին չի մասնակցում:

ԱՆԱՀԻՏ.—Կխոսենք հետը: Ես ինքս կխոսեմ, խելքի կգա:

ՆԻՆԱ.—Դու հետը խոսիր, բայց լավ կլինի, եթե մենք օղակով այցելենք նրան:

ԱՆԱՀԻՏ.—Պետք է պահանջել, որ նա զանազան իրեր ու մոդելներ պատրաստի:

ՆԻՆԱ.—Այսուհետև օղակի բոլոր անդամներով պետք է պատրաստենք գործող մոդելներ, գործիքներ: *(Հավանության նշաններ)*: Հիմա կարող եք ցրվել, իսկ երկու ժամից հավաքվում ենք մեր տանը: *(Ցրվում են)*:

*(Վարագույրի առաջ են գալիս Դավիթն ու Սարոն: Սարոն ագահաբար ուտում է)*:

ԴԱՎԻԹ.—Այ՛ տղա, է՞լի ես ուտում:

ՍԱՐՈ.—Ախր չեմ կշտանում:

ԴԱՎԻԹ.—Դե հացդ կուլ տուր, որ սկսենք մեր խաղը:

ՍԱՐՈ.—Երկու՞ հոգով:

ԴԱՎԻԹ.—Այո, զորքը նայում է, իսկ հրամանատարները մենամարտում են: Ուրեմն դու «թշնամի» ես:

ՍԱՐՈ.—Ես չեմ ուզում «թշնամի» լինել:

ԴԱՎԻԹ.—Ստից, հասկանու՞մ ես, ստից:

ՍԱՐՈ.—Ես ուզում եմ կարմիր հրամանատար լինել:

ԴԱՎԻԹ.—Ուրեմն որ դու կարմիր հրամանատար լինես, «թշնամին» ե՞ս լինեմ, հա՞:

Սրա խելքին նայեք: Ա՛ռ, վերցրու սուրդ:

ՍԱՐՈ.—Դու միշտ էլ կարմիր հրամանատար ես և միշտ էլ հաղթում ես:



ԴԱՎԻԹ.— Շատ մի՛ խոսիր, սկսում ենք: (*Մենամարտում են ինքնաշեն սրերով, հաղթում է Դավիթը և ոտքը դնում է նրա կրծքին*)։
Կգնաս և բոլորին կասես, որ մենք անհաղթ ենք:

ՍԱՐՈ.— Ի՛նչ ես հում տալիս, կողերս ջարդեցիր:

ԴԱՎԻԹ.— Վեր կաց և փոխ եղիր, որ գլուխդ ողջ մնաց։

ՍԱՐՈ.— Մի օր էլ ես քո կողերը կջարդեմ:

ԴԱՎԻԹ.— Ի՞նչ (*հարձակվում է: Սարոն փախչում է և ընդհարվում Անահիտի հետ, ապա անհայտանում*)։

ԱՆԱՀԻՏ.— Զգույշ... (*Նկատելով Դավիթին*) ի՞նչ ես անում:

ԴԱՎԻԹ.— Դավիթ զորավարն եմ, հաղթեցի «թշնամուն»: «Թշնամին» խուճապահար փախավ: Ինքդ տեսար:

ԱՆԱՀԻՏ.— Դավիթ զորավա՛ր... Չէ մի գեներալ: Դու դեռ սովորիր քայլել պիոներական ստիճաններով, հետո զորավար դարձիր:

ԴԱՎԻԹ.— Էլի՜... Աստիճաններ, հա աստիճաններ: Ես հայտնի ֆուտբոլիստ եմ, բա դա աստիճան չի՞:

ԱՆԱՀԻՏ.— Դա լավ է, բայց քիչ է:

ԴԱՎԻԹ.— Ոտքերս ուժեղ են, ես լավ վազում եմ և կարող եմ երեք աստիճան միանգամից թռչել:

ԱՆԱՀԻՏ.— Զգույշ, հանկարծ չընկնես, ոտքդ կջարդվի: Դեռ դու հասարակ հմտությունները յուրացրու: Միանգամից թռչելդ չուզեցինք, պարծենկո՛տ:

ԴԱՎԻԹ.— Օրինակ, ի՞նչ հմտություն յուրացնեմ:

ԱՆԱՀԻՏ.— «Պիոներական աստիճաններում» ասված է, որ մենք պետք է մի օգտակար բան պատրաստենք օղակի համար:



ԴԱՎԻԹ.— Էլի՛ օղակի... չեմ պատրաստի ՛և առհասարակ օղակի հետ գործ չունեմ:

ԱՆԱՀԻՏ.— Լավ, ասենք թե օղակի համար չես ուզում, չես պատրաստում:
Եթե շնորհք ունես, քեզ համար պատրաստիր:

ԴԱՎԻԹ.— Պատրաստում եմ:

ԱՆԱՀԻՏ.— Չի երևում:

ԴԱՎԻԹ.— Եթե գաս մեր տո՛ւն՝ ցույց կտամ (*կանչում է*). Սարո՛... Սարո՛... (*գալիս է Սարոն հագ ստելով*):

ՍԱՐՈ.— (*Ե՛վ խոսում է, և՛ ծամում. քիչ է մնում խեղդվի*)։ Ի՞նչ է պատահել, Դավիթ:

ԴԱՎԻԹ.— Էլի՛... Նախ հացդ կուլ տուր: Այդպես: Ետ դա՛րձ: Հիմա ներկայացիր, ինչպես կարգն է:

ՍԱՐՈ.— (*Զգաստ դիրք ընդունած, հասարակ քայլերով մոտենում է Դավիթին, պատիվ առնում*)։ Անհաղթ զորավար, թշնամիների շանթահար, բակի փոքրիկների հոգևոր, ցոգոլակիրների մարտական ղեկավար, ֆուտբոլի մեծ սիրահար, ինչպես նաև կենտրոնական հարձակվող ընկեր Դավիթ անհաղթ, Ձեր հրամանով ներկայացա: Զեկուցող՝ ձեր թիկնապահ ու շտաբի պետ, ստարշինա՝ Սարո:

ԴԱՎԻԹ.— Այ դա ուրիշ բա՛ն: Ազդեցիկ էր և կանոնադրության համապատասխան:

ԱՆԱՀԻՏ.— Վա՜յ, սրանց օյինբազությունները տեսեք: Հասարակ բաները չգիտեն, բայց տեսեք՝ ու՞ր են թռչում: Դու դեռ սովորիր սենյակը կարգի բերել, մի գործող մոդել պատրաստիր, հետո այդքան կոչում հափշտակիր:

ԴԱՎԻԹ.— Սենյակը կարգի բերել կարող եմ, իսկ մոդելը... գնանք, հենց հիմա տես (*մտնում են ներս*)։

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

*Սենյակ: Մտնում են Դավիթը, Անահիտը և Սարոն:*

ԴԱՎԻԹ.— Եկե՛ք, եկե՛ք (*ցույց է տալիս մոդելը*)։ Լա՞վ է:

ԱՆԱՀԻՏ.— Մոդելը լավն է, բայց ափսոս գործող չէ: (*Մտածում է*). եթե այս մոդելի ձևը փոխենք... (*գրում է, ջնջում*)։ Չէ՛, չի ստացվում: Նինան եթե այստեղ լիներ, մի խելոք առաջարկ կաներ:

ԴԱՎԻԹ.— Էլի այդ Նինան... Ես առանց նրան էլ կարող եմ:

ԱՆԱՀԻՏ.— Դե, եթե կարող ես, այդ մոդելը դարձրու գործող մոդել:

ԴԱՎԻԹ.— Եվ կդարձնեմ... Եթե մի բան որոշեմ, անպայման կանեմ:

ԱՆԱՀԻՏ.— Իսկ եթե օղակի անդամներն այստեղ լինեին, առաջարկներ կանեին, խորհուրդ-

ներ կտային: Չէ՞ որ բոլորս մասնակցում ենք պատանի տեխնիկների խմբակի պարապմունքներին:

ԴԱՎԻԹ.— Չեմ ուզում: Ես առանց մյուսների էլ կարող եմ: *(Լսվում է Անահիտի մոր ձայնը)։*

ԱՆԱՀԻՏ.— Մայրիկս կանչում է, ես գնում եմ *(գընում է)։*

ԴԱՎԻԹ.— *(Սարոյին)* Եթե դու իսկական շտաբի պետ ես, ինձ օգնիր այս մոդելը գործող դարձնենք:

ՍԱՐՈ.— Գործողս ո՞րն է, չեմ հասկանում:

ԴԱՎԻԹ.— Պետք է այնպես անել, որ սա շարժվի կամ թռչի:

ՍԱՐՈ.— *(Մոդելը տնտղում է, մտածում)։* Հիմա դու տես, թե ոնց կշարժվի: Մի կտոր թել բեր: *(Դավիթը բերում է, Սարոն թելի մի ծայրը կապում է մոդելին, մյուս ծայրից բռնում է և ձգելով շարժում)։* Խնդրեմ:

ԴԱՎԻԹ.— Սրա խելքին ու հնարքներին նայեցեք:

ՍԱՐՈ.— Դու չասացի՞ր, որ մոդելը շարժվի:

ԴԱՎԻԹ.— Հա՛, շարժվի, բայց ոչ թե մեր, այլ մի ուրիշ ուժով *(դրսից լսվում է շան հաչոց)։*

ՍԱՐՈ.— Լսո՞ւմ ես, Զայկան գզում է Ալաբաշին *(երկուսով մոտենում են պատուհանին)* Զայկա, հու՛պ տուր դրան: Վա՜յ... Զայկան փախավ...

ԴԱՎԻԹ.— Գնանք, ես ցույց կտամ Ալաբաշին: *(Գնում են, բեմը մի պահ դատարկվում է: Գալիս են Նինան, Անահիտը, Վարդանը, Հենրիկը և Ռուբիկը)։*

ՎԱՐԴԱՆ.— Այս ու՞ր է մեր միայնակը:

ՆԻՆԱ.— Մի՞թե տանը ոչ ոք չկա: Գոնե մայրը տանը լիներ, նրանից կիմանայինք, թե ու՞ր է Դավիթը:

ՌՈՒԲԻԿ.— Մայրն այս ժամին աշխատում է:

ԱՆԱՀԻՏ.— Քիչ առաջ ինքն էլ, Սարոն էլ այստեղ էին: *(Նայում է պատուհանից)։* Ահա նա, Դավիթը:

ՌՈՒԲԻԿ.— Ինչ-որ շնիկ է քարշ տալիս:

ՆԻՆԱ.— Ամբողջ օրը խաղում է, վազվզում, իսկ մեզնից հեռու է փախչում:

ՀԵՆՐԻԿ.— Նա չի ուզում որևէ մեկին ենթարկվել:

ՌՈՒԲԻԿ.— Ամեն տեղ ինքն է ուզում ղեկավարել:

ՎԱՐԴԱՆ.— Եվ հրամայել: Հենց որ հավաքվում ենք խաղալու, անպայման ուզում է հրամանատար լինել:

ԱՆԱՀԻՏ.— Բայց նա մի հետաքրքիր մոդել է պատրաստել: Եթե մենք օգնենք...

ՎԱՐԴԱՆ.— Նա մեր օգնությունը չի ընդունի:

ՆԻՆԱ.— Պետք է համոզել: Ահա և ինքը *(Գալիս է Դավիթը, նրա հետևից Սարոն)։*

ԴԱՎԻԹ.— Ինչի՞ եք եկել:

ՀԵՆՐԻԿ.— Հյուր ենք եկել:

ԴԱՎԻԹ.— Դա ուրիշ բան է, իսկ թե եկել եք համոզելու, իզուր է:

ՆԻՆԱ.— Եկել ենք շատ կարևոր գործի համար: Գնալու ենք միօրյա արշավի:

ՀԵՆՐԻԿ.— Ե՛վ ձողանով կմագլցենք, և՛ կմրցենք 25 մետր լողի մեջ:

ՌՈՒԲԻԿ.— Այսինքն՝ պիոներական երկրորդ աստիճանի համար սահմանված հմտություններից երեքն էլ կյուրացնենք:

ԱՆԱՀԻՏ.— *(Դավթին)* Դու պատրաստվիր, առավոտյան շուտ ճանապարհվելու ենք:

ՌՈՒԲԻԿ.— Մայրիկից կասես, որ մեր ղեկավարը լինելու է ջոկատավար Աշոտը: Հենց որ դա իմանա, կթողնի կգաս:

ԴԱՎԻԹ.— Ես որ գալու լինեմ, մայրիկս չի հակառակի:

ԱՆԱՀԻՏ.— Ուրեմն կարող է պատահել, որ չգաս էլ:

ԴԱՎԻԹ.— Տեսնենք:

ՍԱՐՈ.— Կարո՞ղ եմ ձեզ հետ գալ:

ՎԱՐԴԱՆ.— Ոչ, դու մեր օղակից չես, և դեռ շատ էլ փոքր ես: Դու դեռ յուրացրու առաջին աստիճանի հմտությունները, հետո արշավի մասին մտածիր:

ՆԻՆԱ.— *(Մի թուղթ է տալիս Դավթին)։* Այստեղ գրված է, թե ինչ պետք է վերցնես հետդ:

ԱՆԱՀԻՏ.— Ուրեմն մինչև վաղը:

*(Դուրս են գնում: Մնում են Դավիթն ու Սարոն)։*

ՍԱՐՈ.— «Դու մեր օղակից չես, դու փոքր ես» *(լեզու է հանում նրանց հետևից)։*



ԴԱՎԻԹ.— Եթե դու պստիկ չլինեիր, ես քեզ հետ արշավի կգնայի:

ՍԱՐՈ.— Պստիկ եմ, բայց ճստիկ եմ:

ԴԱՎԻԹ.— Ուրեմն կդիմանա՞ս:

ՍԱՐՈ.— Տղամարդու պես:

ԴԱՎԻԹ.— Ես ու դու մենակ ենք գնալու, առանց մյուսների: Հիմա ես երկտող կգրեմ, որ մայրիկս աշխատանքից վերադառնալուց հետո չանհանգստանա: *(Գրում է:)*

ՍԱՐՈ.— Նրան խնդրիր, որ իմ մայրիկին էլ հայտնի:

ԴԱՎԻԹ.— Ի՞նչ եղավ նրանց տված ցուցակը *(Նայում է ցուցակին)*: Մեկ օրվա ուտելիք *(հանում է պահարանից)*: Դու փաթաթիր և տեղավորիր պայուսակում: Պարան, կաթսայիկ, դանակ, կողմնացույց, լուցկի:

*(Գնում է խոհանոց և ետ գալիս)*: Տեղավորեցի՞ր:

ՍԱՐՈ.— Այո:

ԴԱՎԻԹ.— Թիկնապա՛հ:

ՍԱՐՈ.— Լսում եմ:

ԴԱՎԻԹ.— Ետ դա՛րձ: Ներկայացիր, ինչպես որ կարգն է:

ՍԱՐՈ.— *(Զգաստ դիրք ընդունած, շարային քայլերով մոտենում է և պատիվ առնում)*: Անհաղթ զորավար, թշնամիների շանթահար, բակի փոքրիկների հոգեառ, ցոգոլակիրների մարտական ղեկավար, ֆուտբոլի մեծ սիրահար, նմանապես խելագար...

ԴԱՎԻԹ.— Ի՞նչ...

ՍԱՐՈ.— Ներողություն, ուզում էի ասել՝ զորավար, ինչպես նաև կենտրոնական հարձակվող ընկեր Դավիթ անհաղթ: Լսում եմ ձեզ: Զեկուցող՝ ստարշինա Սարո:

ԴԱՎԻԹ.— Արշավանքին եղիր պատրա՛ստ:

ՍԱՐՈ.— Մի՛շտ պատրաստ:

ԴԱՎԻԹ.— Այժմ երգենք պիոներական երգը:

*(Շրջում են սենյակում: Դավիթը երգում է, իսկ Սարոն լսում):*

Երգիր, ի՞նչ ես լռել:

ՍԱՐՈ.— Այդ երգը չգիտեմ:

ԴԱՎԻԹ.— *(Երգում է մի ուրիշ երգ):*

ՍԱՐՈ.— Ես այդ էլ չգիտեմ:

ԴԱՎԻԹ.— Դե երգիր այն երգը, որ գիտես:

ՍԱՐՈ.— Ախր պիոներական երգ չի:

ԴԱՎԻԹ.— Ոչինչ, երգի՛ր:

ՍԱՐՈ.— *(Երգում է մի հին երգ)*: Հոյ Նազան իմ, Նազան իմ...

ԴԱՎԻԹ.— Ա՛խ, հիմարիկ: Աստիճանները պահանջում են, որ պիոները փոքրին երգեր սովորեցնի: Լսիր և մասնակցիր: Քայլով մարշ: *(Երգում են)* «Պիոներ, վայրկյաններ մի՛ կորցնիր դու»:

*(Դուրս են գնում)*

ՎԱՐԱԳՈՒՅՐ

## ԵՐԿՐՈՐԴ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

Թփուտներով ու ծառերով ծածկված մի ժայռոտ տեղ: Գալիս են Դավիթն ու Սարոն:

ԴԱՎԻԹ.— Ահա՛: Վերջապես մի հարմար ժայռ, որի վրա կբարձրանանք ճոպանի միջոցով: *(Ուշադիր նայում է դեպի վեր)*: Հարմար ցցվածք է: Եթե այս օղակը գցեմ այն ցցվածքին, ուրեմն կարող ենք բարձրանալ:

ՍԱՐՈ.— Իսկ գցել կարո՞ղ ես:

ԴԱՎԻԹ.— Դու ինձ նո՞ր ես ճանաչում: Մի նայիր, տես, ի՞նչ կանեմ հիմա:

*(Պարանը գցում է, բայց չի ընկնում ցցվածքին):*

ՍԱՐՈ.— Մի փուչ:

ԴԱՎԻԹ.— Հիմա տես... *(Գցում է: Դարձյալ անհաջող)*:

ՍԱՐՈ.— Դա էլ երկու փուչ:

ԴԱՎԻԹ.— Թևիս տակից հեռու գնա: *(Գցում է, անհաջող):*

ՍԱՐՈ.— Երեք փուչ: *(Ծիծաղում է):*

ԴԱՎԻԹ.— *(Արդեն ջղայնացած)*: Ինչ ես կռկռում ագռավի նման:

ՍԱՐՈ.— Դա ֆուտբոլի գնդակ չի, որ էսպես դնես *(ձևացնում է, թե ինչ կաներ գնդակ լինելու դեպքում)*, այսպես նայես, ետ գնաս, աչքով չափես, առաջ վազես, ոտքով խփես... և պատրաստ է:



ԴԱՎԻԹ.—Քեզ ասացի, հեռու կանգնիր *(գցում է պարանը, որը ետ չի ընկնում)*: Տեսա՞ր...*(Սարոն նայում է դեպի վեր)*:

ՍԱՐՈ.—Պարանը թափ տուր:

*(Դավիթը թափահարում է, պարանը ցած է ընկնում)*:

ՍԱՐՈ.—Տեսա, բա չտեսա՜:

ԴԱՎԻԹ.—Տեսա՞ր...*(խիստ բարկացած, պարանը հավաքում է գցելու համար)*

ՍԱՐՈ.—*(Վտանգ զգալով ետ-ետ է քաշվում)*: Տեսա... տեսա...

ԴԱՎԻԹ.—Ասում ես՝ տեսա՞ր: *(Հանկարծ պարանը գցում է Սարոյի վրա: Օղակը ընկնում է Սարոյի վիզը, Դավիթը ձգում է, Սարոն սկսում է գոռալ, Դավիթը նրան այս ու այն կողմն է քաշքշում)*: Հիմա էլ տեսա՞ր, թե չտեսար:

ՍԱՐՈ.—Ներողությու՜ն, ներողություն, Դավիթ անհաղթ...

ԴԱՎԻԹ.—Ծնկի ե՛կ: Ներողություն խնդրիր: Այդպես, վե՛ր կաց: *(Պարանը հանում է Սարոյի վզից, նորից է գցում, գարձյալ անհաջող: Նայում է Սարոյի կողմը: Վերջինս անտարբեր կանգնել է և իր հնացած երգն է երգում)*:

Մի անգամ որ թարվել է, էլ չի շտկվի: Պետք է ուրիշ բան մտածել:

ՍԱՐՈ.—Արի այս կողմից վերև բարձրանանք, պարանի մի ծայրը կապենք, մուսը՝ ցած գցենք:

ԴԱՎԻԹ.—*(Մի պահ գլուխ է գալիս, ապա վերադառնում)*: Այն կողմից կարելի է բարձրանալ: Սպասիր այստեղ: *(Գնում է: Սարոն տաբլիք է հանում և սրտագ-սրտագ ուտում: Լսվում է Դավթի ձայնը)*: Կապեցի, գցում եմ՝ բռնի՛ր *(պարանի ծայրը ցած է գցում)*:

ՍԱՐՈ.—Ինչ էլ շատ հասավ: *(Աշխատում է կուլ տալ գեռևս չծամած հացի կտորը: Գալիս է Դավիթը)*:

ԴԱՎԻԹ.—Այ տղա, նոր չկերա՞նք:

ՍԱՐՈ.—Ես չեմ ուտում:

ԴԱՎԻԹ.—Բա ծամում էիր:

ՍԱՐՈ.—Մի քիչ առաջ ուտելիս, մի փշուր մնացել էր ատամիս արանքում, դա էի ծամում:

ԴԱՎԻԹ.—Չհամարձակվես ուժիմը խախտել: Հիմա գործի անցնենք: Ես կբարձրանամ մինչև այս ցցվածքը, իսկ հետո դու կբարձրանաս: Այդպես ցցվածքից ցցվածք, մինչև կհասնենք կատարը *(փորձում է բարձրանալ, մի քանի անգամ սայթաքում է և ընկնելու վտանգի ենթարկվում)*:

ՍԱՐՈ.—Եթե ձեռքերդ էլ ոտքերիդ չափ ուժեղ լինեին:

ԴԱՎԻԹ.—Այդ տարբերությունը շատ է: *(Հազիվ բարձրանում է)*: Դե հիմա դու բարձրացիր:

ՍԱՐՈ.—*(Մի քանի անգամ փորձում է, բայց չի կարողանում)*: Ավելի լավ է մյուս կողմից բարձրանամ:

ԴԱՎԻԹ.—Վախենու՞մ ես, ինչ է: Սովորիր ճոպանով բարձրանալ:

ՍԱՐՈ.—Ախր դժվար է: *(Մի քանի անգամ էլ փորձելուց հետո)*: Որ սպանես էլ՝ չեմ կարող:

ԴԱՎԻԹ.—Մի քիչ սպասիր ինքս ինձ կապեմ, թե չէ հանկարծ վայր կընկնեմ: *(Պարանի միջին հատվածով կապում է իր իրանը, իսկ ազատ ծայրը կրկին ցած գցում)*: Դե պինդ բռնիր միայն, իսկ ես կբարձրացնեմ քեզ: *(Չի կարողանում)*: Գոնե ոտքերովդ հենվիր ժայռին, որ ես կարողանամ քաշել: Այդպես...մեկ անգամ էլ...*(Հանկարծ Սարոյի ոտքը սայթաքում է, ինքը ցած է ընկնում, իսկ նրա թափից՝ կանգնած տեղից պոկվում է նաև Դավիթը, բայց պարանով կապված լինելու պատճառով մնում է օդում կախված այն ցցվածքի տակ, որի վրա կանգնած էր մինչև ընկնելը)*:

ՍԱՐՈ.—*(Դեռ չի տեսել օդում կախված Դավթին)*:



Ամա՜ն...մեռա...Վա՜յ կողքս... վա՜յ մեջքս... *(Ուզում է ոտքի կանգնել)*: Վա՜յ...վա՜յ...վա՜յ... *(Տեսնելով Դավթին)*: Վա... *(վեր է կենում ձեռքերն օդում պարզած դես ու դեն է թաշում, որ ընկնելիս բռնի, բայց տեսնելով Դավիթն ամուր կապված է, սկսում է ծիծաղել)*: Ինչ ճարպիկ ես, առանց պարաշյուտի կախվել ես օդում: Տրա-լա՛-լա՛, տրա՛-լա՛-լա՛:

ԴԱՎԻԹ.—Ի՞նչ հռհռալու ժամանակ է, հիմա՛ր: Օգ՛նիր վեր բարձրանամ:

ՍԱՐՈ.—Մեկը լինի ինձ օգնի *(տնքտնքալով նըստում է)*

ԴԱՎԻԹ.—*(Փորձում է պարանի միջոցով վեր բարձրանալ, բայց չի կարողանում)*: Ա՜խ, եթե ձեռքերս էլ ոտքերիս չափ մարզված լինեին:

ՍԱՐՈ.- Բայց դու իսկական լարախաղաց ես...

ԴԱՎԻԹ.—Ի՞նչ ես փչել: Վե՛ր կաց, մի բան մըտածիր:

ՍԱՐՈ.—Ի՞նչ անեմ: Քեզ վերև հրելու համար հասակս կարճ է, իսկ եթե պարանից կախվեմ, քեզ համար լավ չէ:

ԴԱՎԻԹ.—Գտիր մի փայտ, մի գերան...Մի որևէ բան, որ ինձ դեպի վեր հրես: *(Սարոն մի բան գտնելու հույսով դուրս է գնում: Պաուզա)* Սարո՞:

ՍԱՐՈ.—*(Զգաստ դիրքով, շարային քայլվածքով, պատվի առած մտնում է)*: Աննահանջ զորավար, թշնամիների շանթահար, բակի փոքրիկների հոգեառ, մարտական...

ԴԱՎԻԹ.—*(Գոռում է)* դրա ժամանակը չէ, հիմա՛ր: Շուտ օգնիր:

ՍԱՐՈ.—Ախր ո՞նց օգնեմ, փայտ էլ չկա...

ԴԱՎԻԹ.—*(Գրպանից հանում է դանակը և ցած գցում)*: Թե կարող ես մի հաստ ճյուղ կտրիր:

ՍԱՐՈ.—Ավելի շուտ գնամ վերև և պարանը կտրեմ:

ԴԱՎԻԹ. Ճիշտ ես ասում: Ես ուղղահայաց դիրքով կկախվեմ, որ ցած թռչելը հարմար լինի: Դու կտրիր պարանը:

ՍԱՐՈ.—*(Վազելով գնում է դուրս, քիչ անց վերևից լսվում է նրա ձայնը)*: Կտրում եմ: Պատրա՛ստ եղիր:

ԴԱՎԻԹ.—Պատրաստ եմ, կտրիր *(Պարանը կտրվում է: Դավիթը թրմփալով ընկնում է ցած)*:

ՍԱՐՈ —Հաջո՞ղ էր...Գլուխդ ո՞ղջ մնաց...Դավի՛թ, դե ձայն հանիր է...Չլինի՞ թե...Գալիս եմ, պինդ կաց: *(Մի քիչ անց ներս է ընկնում)*:

ԴԱՎԻԹ.—*(Հազիվ կարողանում է շարժվել: Սարոն մտնում է թևը և աշխատում է վեր բարձրացնել: Դավիթը ձգվում է, աշխատում է կանգնել ոտքի վրա, բայց ցավից գոռում է և խկույն նըստում)*: Վա՜յ ոտքս:

ՍԱՐՈ.—Ոչի՜նչ, կանգնի: Սկզբում իմս էլ շատ էր ցավում, բայց շուտով անցավ:

ԴԱՎԻԹ.—*(Սարոյի օգնությամբ նորից է կանգնում, բայց սախված էլի նստում է)*: Սա լուրջ բան է երևում: Ինչպես երևում է՝ ոտքիս ոսկորը ջարդվել է:

ՍԱՐՈ.—Ո՞նց թե ջարդվել է: Այսպիսի բարձրությունից թռչողի ոտքը կջարդվի՞:

ԴԱՎԻԹ.—Լավ չթռա, ոտքս ծալվեց:

ՍԱՐՈ.—Վե՛ր կաց, Դավիթ ջան, վեր կաց, մի կերպ շարժվենք: Տե՛ս, արդեն մթնում է:

ԴԱՎԻԹ.—Ցավը գնալով շատանում է: Կա, չկա ոսկորն իսկապես ջարդվել է:

ՍԱՐՈ.- Այ՜ քեզ խաթա...*(մտածում է)*: Բա ինչ անենք: Իսկապես որ մթնեց, Դավիթ ջան, դու մի կերպ վեր կաց, ձեռքդ գցիր ուսիս, զոռով է, թե խաթրով, քիչ-քիչ շարժվիր:

ԴԱՎԻԹ.—Կարո՞ղ ես մի ձեռնափայտ կտրել ինձ համար:

ՍԱՐՈ.—Ինչո՞ւ չէ: Կարող եմ *(Գնում է ու մի փայտ բերում)*: Շատ հարմար է, իսկական ձեռնափայտ: Առ, մի կողմից փայտին հենվիր, մյուս կողմից՝ ինձ: Վե՛ր կաց: Այսպես: Հիմա փոխիր ոտքդ: Մե՛կ էլ: Ը՜հը...



**ՎԱՐԱԳՈՒՅՐ**

*(Շարունակելի)*




№ 2 ՓԵՏՐՎԱՐ 1960

# ՄԵՐ ՍԻՐՏԸ

*Սիրտը մեր օրգանիզմի ամենակարևոր օրգանն է, որը մեր կյանքի առաջին օրից մինչև վերջին վայրկյանը օր ու գիշեր առանց հանգստի, անխոնջ աշխատում և արյուն է ուղարկում մեր մարմնի ծայրամասերը: Երբ մեր ձեռքերը, ոտքերը, աչքերը և անգամ ուղեղը հոգնում են, մենք իսկույն ձեռնամուխ ենք լինում, որ նրանք հանգստանան, այսինքն նստում ենք, պառկում կամ ուղղակի քնում: Պատահական չէ, որ ժողովուրդը ասում է «քնից հետո ուղեղը թարմանում է»: «Թարմանալ» ասելով հասկանում ենք հանգստանալ: Այն ժամանակ, երբ հանգստանում են մեր բոլոր օրգանները, անդադար աշխատում է սիրտը:*

*Հայտնի է, որ մարդը ապրում է 80—100 և անգամ 150 տարի, իսկ որոշ թռչուններ ապրում են մի քանի հարյուր տարի, Նշանակում է նրանց սիրտը բաբախում է մի քանի դար շարունակ: Բայց պատկերացրեք բնության մի ուրիշ ավելի հետաքրքիր երևույթ: Փղի սիրտը մեկ րոպեում խփում է 25-ից մինչև 40 անգամ, ձիու սիրտը 35—50 անգամ, իսկ մկան սիրտը 520—780 անգամ: Սակայն այս թվերը գի-*

*ապա նրանց երկարությունը կըհասնի մոտ 100 հազար կիլոմետրի: Մեր սիրտը իր ծավալով մեծ չէ: Նա հավասար է մարդու մարմնի երկու հարյուրերորդական մասին, այսինքն, եթե մարդը ունի 60 կիլոգրամ քաշ, ապա նրա սիրտը կլինի 300 գրամ: Սրտի ուժեղ մկանները պահանջում են նաև ուժեղ սնունդ: Ոմանք կարծում են թե սրտի մկանները սնվում են այն արյունով, որը գտնվում է հենց սրտի մեջ: Դա սխալ է: Սիրտը մեր օրգանիզմի ամենից խոշոր զարկերակից՝ աորտայից ստանում է անոթների մի խումբ, որոնք իրենց դասավորության պատճառով կոչվում են պսակաձև անոթներ: Սրանց միջով դեպի սրտի մկաններին են հոսում մեր մարմնի ամբողջ արյան տասներորդական մասը: Այսինքն՝ եթե մարդու օրգանիզմում ամբողջ արյան*



# ԼՈՂՈ՞ՒՄ ԵՆ ԱՐԴՅՈՔ ՄԱՅՐ ՑԱՄԱՔՆԵՐԸ

Մի՞թե երկրագունդը միշտ այնպիսի տեսք է ունեցել, ինչպես հիմա:

Մի՞թե երկրագնդի վրա միշտ եղել են միայն հինգ մայր ցամաքներ և օվկիանոսները:

Մի՞թե այդ մայր ցամաքների, ծովերի և օվկիանոսների ուրվագծերը միշտ եղել են այնպիսին, ինչպես հիմա: Այս հարցերը միշտ էլ վեճերի առիթներ են տալիս: Երկրաբաններից մի մասը՝ ֆիկսիստները (ֆըրանսերեն «ֆիկսացման ենթարկել», «ամրացնել» բառից) ասում են, որ միշտ էլ այդպես է եղել: Ուրիշները, մոբիլիստները («մոբիլե», «շարժում» բառից) ընդհակառակը, պնդում են, որ համաշխարհային օվկիանոսը եղել է միակ «մայր ցամաքը», որը հետագայում մասնատվել է և այդ մասերը «լողալով» հեռացել են իրարից և հիմա էլ շարունակում են լողալ:

Ինչպե՞ս պարզել, թե ով է ճիշտ:

Ակներև է, որ այդ հարցերին պատասխանելու համար անհրաժեշտ է պարբերաբար չափել մայր ցամաքների միջև ընկած տարածությունը: Դրա համար հարկավոր է ունենալ ամենաճշգրիտ չափման գործիքներ, որը հնարավորություն կտա մի քանի հազար կիլոմետր ունեցող տարածությունը չափել սանտիմետրերի ճշտությամբ:

1926 և 1933 թ. թ. միջազգային չափումները ոչ մի ցանկալի արդյունք չըտվեցին: Օրինակ՝ Եվրոպայի և Ամերիկայի միջև եղած տարածությունը մեզ հայտնի է միայն 150 մետրի ճշտությամբ: Հիմա, երբ գիտնականներն իրենց ձեռքի տակ ունեն էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, ճշգրիտ կվարցային ժամացույցներ և մոլեկուլային գեներատորներ, երբ երկրագունդը ծածկված է հետազոտական կայաններով, արդեն մենք անպայման կմոտենանք այդ հարցերի ճիշտ լուծմանը:

## Գիտե՞ք որ...

Արեգակը մեկ տարվա ընթացքում իր քաշից կորցնում է 132 000 000 000 000 (132 տրիլիոն) տոնն: Արեգակնային համակարգությունը մեկ տարվա մեջ տիեզերքում անցնում է 600 միլիոն կիլոմետր տարածություն:

Երկրագունդը մեկ տարում իր ուղեծրով անցնում է 960 միլիոն կիլոմետր ճանապարհ:

տեղի է ունենում միջին հաշվով 16 միլիոն ամպրոպ:

Երկրագնդի վրա տարեկան թափվում են 400 խորանարդ կիլոմետր մթնոլորտային տեղումներ:

Տարվա ընթացքում լինում է մինչև 5 արևի խավարում:

Տարվա ընթացքում լինում է մինչև 3 լուսնի խավարում:

Տարեկան տեղի է ունենում 10 հազար երկրաշարժ:

ռեկորդային չեն, կան, ավելի արագ բաբախող սրտեր. այսպես օրինակ՝ ճնճղուկի սիրտը մեկ րոպեում խփում է մինչև... 900 անգամ, այսինքն՝ մեկ վայրկյանում խփում է 15 զարկ։

Իսկ ինչպե՞ս է, որ սիրտը այդքան արագ և այդքան երկար աշխատելով, երբեք չի հոգնում։ Չնայած սիրտը անընդհատ է գործում, բայց նա հանգստանում է, միայն թե նրա հանգիստը մենք երբեք չենք զգում։ Սրտի մկանները կծկվում են 0,4 վայրկյանի ընթացքում, ապա հանգստանում։ Ամեն այդպիսի կծկման ժամանակ սիրտը դուրս է մղում 60—70 խորանարդ սմ արյուն։ Սրտից դուրս եկած արյունը զարկերակների և մազանոթների միջոցով գնում է մեր օրգանիզմի տարբեր ծայրամասերը։ Եթե մեր օրգանիզմի բոլոր արյունատար անոթները իրար միացնենք, նրանց ընդհանուր երկարությունը հասնում է մոտավորապես 5 լիտրի, ապա 0,5 լիտրը սնուցում է սրտի մկանները։

Սրտի մկանների աշխատանքը, կամ ինչպես ասում են սիրտը ուժեղացնելու համար մեծ նշանակություն ունի ամենօրյա մարզանքը. իսկ հայտնի է, որ մարզանքի ամենալավագույն ձևը ֆիզիկական աշխատանքն է։ Սրտի մկանների մարզման հետևանքով մեծանում է նաև նրանց կծկման հաճախականությունը և կծկումների ուժը։ Դրա հետևանքով ավելանում է նաև դուրս մղվող արյան քանակը։ Իսկ որքան շատ արյուն է դուրս մղվում, այնքան շատ սնունդ են ստանում մեր հյուսվածքները, որով պայմանավորված է նաև օրգանիզմի տոկունությունը և աշխատունակությունը։

Հ. Գևորգյան
(բժիշկ)

Մեկ տարում երկրագնդի վրա ընկնում է մի քանի հազար տոնն երկնաքարային նյութ։

Տարեկան երկրագնդի մթնոլորտում

Մեկ վայրկյանում ամբողջ երկրագնդի վրա փայլատակում է մոտ 100 կայծակ։ Դե, հաշվեք, թե որքան կլինի մեկ տարվա ընթացքում։

# Քլորելլա



Դուք գիտե՞ք, թե ինչ բան է քլորելլան կամ կանաչ ջրիմուռը։

Կանաչ ջրիմուռը միաբջիջ, ցածր կարգի բույս է։ Հակառակ մյուս բույսերի, ջրիմուռը չունի ցողուն, արմատ, տերև, ծաղիկ ու սերմ։ Այն կարելի է տեսնել մանրադիտակով գրեթե ամեն տեղ՝ լճերում, ծանծաղուտներում, հողի մեջ և այլն։ Ջրիմուռը դիմանում է կյանքի ամենաանբարենպաստ պայմաններին։ Նա շատ է սիրում արևի լույսը, թեպետ վատ չի զարգանում նաև արհեստական լուսավորվածության մեջ։ Նրա սննդի աղբյուրը հիմնականում հանդիսանում են ջրի մեջ լուծված հանքային աղերը և օդի ածխաթթու գազը։ Քլորելլան էժան հումք է հանդիսանում մի շարք արժեքավոր քիմիական նյութեր ստանալու համար։ Այն օգտագործում են նաև որպես սնունդ։ Ճապոնացիները նրանից համեղ ճաշեր են պատրաստում։ Բժիշկները և գիտնականները գտել են, որ նրա սպիտակուցը նույնքան արժեքավոր է, որքան կաթի փոշու սպիտակուցը։

Արհեստական լճերում, ուր ձկներ են բազմացնում, աճեցնում են նաև քլորելլա։ Նրանով սնված ձկներն ավելի արագ են աճում, իսկ նրանց միսը լինում է համեղ ու ույակալ։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ քլորելլան մեծ քանակությամբ թթվածին է արտադրում և կլանում է ածխաթթու գազ, գիտնականներն այն կօգտագործեն նաև միջմոլորակային ճանապարհորդությունների ժամանակ, որպեսզի ուղևորները թթվածնով միշտ ապահովված լինեն։

Ա. ԱՎԱԳՅԱՆ

Ձան նորմալ ջերմաստիճանը բատ Ցելսիուսի 38,3° է, սագինը՝ 40,5°, աղավնունը՝ 42°, իսկ ծիծեռնակինը՝ 44°։ Մեղվի մարմնի ջերմությունը փոփոխվում է օդի ջերմությունից կախված։ Եթե փողոցում բատ Ցելսիուսի 5,5° է, ապա նրա մարմնի ջերմությունը 10,2° է, 27°-ի դեպքում՝ 29,1°։



Մեծ քաղաքի 1 խոր. մետր օդը պարունակում է 330-ից մինչև 1540 տարբեր բացիլներ։

## Ծույափերյից հանար



Բիրմայում 1091 թվականին կառուցվել է մի բուդդայական մեհյան (պագոդա) ոսկե և արծաթե աղյուսներից, 16 մետր բարձրությամբ։ 1095 թվին մեհյանը քանդել և աղյուսները գողացել են։ Հետագայում նրա տեղը կառուցել են ճիշտ նույնպիսի մեհյան, բայց արդեն սովորական աղյուսներով։



Անգլիայում Լիսոու փարոսը կառուցված է... բամբակե հիմքի վրա։ Ափը, որտեղ այն կառուցել են, երկար ժամանակ համարվում էր նավարկության համար վտանգավոր վայր։ Ավազուտ ափը թույլ չէր տալիս այնտեղ փարոս կառուցել։

Ճարտարապետական այդ բարդ հարցի վճռելուն օգնեց... նավաբեկությունը։ 1761 թվականին բամբակ տեղափոխող նավը փոթորկի ժամանակ ջախջախվեց և ափ նետվեց։ Բամբակի հակերը թաղվեցին ավազի մեջ։ Այդ «խառնուրդը» այնքան ամուր էր, որ «բամբակե հիմքի» վրա կառուցված փարոսը արդեն 190 տարի է, ինչ կանգուն է։



Շապիկը՝ ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






## 6 ՄԱՍԻ

Այս վանդակներում գրված են 1—4 թվերը՝ յուրաքանչյուրը 6 անգամ: Պետք է վանդակները բաժանել ձևով միատեսակ 6 մասի այնպես, որ յուրաքանչյուր մասում լինեն բոլոր թվերից:

## Ո՞Ր ԹՎԱԿԱՆԻՆ...

Շահենին հարցրին.

— Քանի՞ տարեկան ես.

— Այն թվականին, երբ տարեթիվը գլխիվայր շուռ տալով, թիվը չի փոխվի, կլրանա իմ այնքան տարին, որքան կլինի տարեթվի թվերի գումարը:

Երեխաներ, որոշեցեք Շահենի ակնարկած տարեթիվը և նրա այժմյան տարիքը:

Առաջարկ՝ Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր վեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06:

ՎՖ 01268. Պատվեր 26: Տպաքանակ 8300: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/I 1960 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.





## ՄԵՐ ՈՂՋՈՒՅՆԸ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՈՂ | ԻՄ | ԱՆ | „ՍՈ | ՅՆ“ |
| ՆԲ | ԻՆ | ՋՈՒ | ԱՐ | ԱԿ |
| ԱՐ | ԱՆ | ♞ | ՊԻ | ՎԵ |
| ԵՐ | ԿԱ | ԵՐ | ԻՔ | ՏԻ |
| ԱԿ | ԱՋ | ԿՆ | ՏԱ | ՈՆ |

*Շախմատի ձիու քայլերով կարդացեք ձեր ող-ջույնը՝ ուղղված...*

*Առաջարկ՝ Յ. ՏՈՆՈՅԱՆԻ*

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 1

### ԳՐԱԿԱՆ ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. «Ցեցեր», 2. «Գիրքը», 3. Տյուլենին, 4. Աղասի, 5. «Սալրի»:

Շրջագծի հատվածներում կարդացվում է «Սիրեցեք գիրքը՝ գիտելիքների աղբյուրը»:

### ՃԱՆԱՉՈ՞ՒՄ ԵՔ ԱՅՍ ՀԵՐՈՍՆԵՐԻՆ

1. Զարդարյան, 2. Չեքալով, 3. Գրիգորև, 4. Պլատով, 5. Ռեշետնիկով, 6. Շևանդրոնովա:

### ՋԱՅՆԿՈՐՈՂ «Ն»

1. Անագ, 2. «Գայանե», 3. Երևան, 4. «Նամուս», 5. Սիրանույշ, 6. շուշան, 7. Նևա, 8. Անի, 9. Իրան, 10. Նախիմով, 11. Վան, 12. Ներկա, 13. «Ավանգարդ». 14. Դարվին, 15. Նիզակ, 16. կանաչ, 17. Չերնիկով, 18. Վարդան, 19. Նար-Դոս, 20. Սևան, 21. Նուռ, 22. ռենետ, 23. Տարոնցի:

### ՆՈՐ ՏԱՐՎԱ ԽՆԴԻՐ





Մ. ՍԱՐՅԱՆ

ԱՐԱՐԱՏ (մատիտ)

1949. 8 VI

ՆՍՏԱԾ ԵՐԵԽԱՆԵՐ

Մ. ՍԱՐՅԱՆ